


ՀՌԻՓՍԻՄԵ ՊՈՂՈՍՅԱՆ

Դասարանում մեր այսօր
Խնդություն է անսովոր:
Հանդիսավոր այս պահին,
Ուսուցչուհու սեղանին
Մենք ծաղիկներ ենք փռել,
Սեղանի շուրջ բոլորել
Ու նայում ենք հիացած
Ուսուցչուհուն մեր նուզված:
Նրա կրծքին մի փոքրիկ
Կարմիր դրոշ կա գողտրիկ՝
Դեպուտատի պարզ նշան,
Որը սիրով անսահման
Նրան երկիրն է տվել,
Երբ դեպուտատ է ընտրել:
Ու բերկրանքով մանկական
Մենք ողջունում ենք նրան:
Նայում, ժպտում է նա մեզ,
Իր սաներին լուսերես:
Մեզ է դիմում ջերմ սիրով,
Այնպես ծանոթ իր ձայնով.
Խոստանում է ծառայել
Եվ պիտանի միշտ լինել
Մեզ՝ սաներին իր սիրած,
Որ սովորենք գերազանց:
Եվ դրոշը բանկագին
Շողշողում է իր կրծքին:
Դասարանում մեր այսօր
Խնդություն է անսովոր:

Նկ. ԱՐ. ՋԱՔԱՐՅԱՆԻ




*Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 3

ՄԱՐՏ

1951 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 23-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Սա՜ իմ գիրքն է, ահա, տե՛ս,
Կուզե՞ս՝ նվեր կտամ քեզ,
Լավ նկարներ կան այստեղ
Այնպե՜ս սիրուն ու շքեղ:

Կան շատ երգեր, հեքիաթներ,
Հետաքրքիր պատմվածքներ...
Երբ լավ կարդալ սովորես,
Այստեղ շատ բան կգտնես:

Վ. ՀԱԿՈԲՅԱՆ





# Հրանուշ մայրիկը

ՀՐԱՉՅԱ ՂԱՓԼԱՆՅԱՆ Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

Հրանուշ մայրիկը վաթսունութ տարեկան կին է, բայց բավականին աշխույժ է, հարցասեր և կենսուրախ։ Նա ունի երկու տղա, չորս աղջիկ, երկու հարս, չորս փեսա և տասներկու թոռ։ Կարճ ասած, Հրանուշ մայրիկի ընտանիքը բաղկացած է քսանչորս հոգուց։ Բայց բոլորը մի հարկի տակ չեն ապրում։ Հրանուշ մայրիկը յոթերորդ ամիսն էր, որ բացակայում էր Երևանից։ Նա գտնվում էր Ստեփանավանում՝ կրտսեր որդու մոտ։

Փետրվարի մի առավոտ Հրանուշ մայրիկը ժամանեց Երևան, իր ավագ տղայի ծննդյան տոնին մասնակցելու համար։ Ընտանիքի բոլոր անդամները կայարանում խանդավառությամբ դիմավորեցին Հրանուշ մայրիկին։ Դեռ գնացքից չիջած նա սկսեց բոլորի վրա հարցերի տարափ տեղալ.

— Գեղամ ջան, գործերդ ո՞նց են...

— Մայրանուշ ջան, երեխաները լա՞վ են...

— Պետի՞կ ջան, ո՞նց ես սովորում...

— Սուրենի ատամը էլ չի՞ ցավում...

— Գագի՞կ ջան, հո էլ մայրիկին չե՞ս բարկացնում...

Եվ այսպես կայարանից մինչև տուն նա անընդհատ հարցեր էր տալիս։

Հաջորդ օրը առավոտյան, Հրանուշ մայրիկը տանն ամեն ինչ կարգավորելուց հետո, որոշեց շուկա գնալ և գնումներ կատարել։ Նա խնամքով շալի մեջ փաթաթվեց, վերցրեց զամբյուղը և դուրս եկավ փողոց։



Դրսում եղանակը մեղմ էր և հաճելի։ Հրանուշ մայրիկը քայլում էր մտքերով տարված։ Իրենց նեղ փողոցից թեքվելով նա մի քիչ էլ գնաց և զարմացած կանգ առավ։

— Վա՜յ, ես ո՞ւր եկա... ախր սա շուկայի ճամփան չի,— բացականչեց նա և ապա նայելով անծանոթ շրջապատին որոշեց՝ կողմնորոշվելու համար, նորից ետ դառնալ իրենց փողոցը։ Այս-

պիսի բան երբեք չէր պատահել նրա հետ։ Քայլում էր ու մտածում։ Ի՞նչպես կարող էր ճանապարհը շփոթել, չէ՞ որ այդ ճանապարհով հազար անգամ նա գնացել ու եկել էր։ Նա հասավ իրենց փողոցը և կանգ առավ։ Հետո ժպտաց և կողմնորոշվելով նորից գնաց նույն ճանապարհով։

— Այս ի՞նչ բան է,— ասաց Հրանուշ մայրիկը, նորից ընկնելով նույն անծանոթ փողոցը,— հրաշք է…

Զարմանքը պատել էր նրան։ Միլիցիոները, որը նկատել էր Հրանուշ մայրիկին մոտեցավ նրան։

— Մայրի՛կ, ինչո՞ւ եք կանգնել փողոցի կենտրոնում։ Եկեք ձեզ մյուս մայթն ուղեկցեմ։

— Շնորհակալ եմ, որդի՛,— շփոթված պատասխանեց Հրանուշ մայրիկը և հետևեց նրան։

Երբ նրանք մյուս մայթը հասան, նա միլիցիոներին ասաց.

— Տղա՛ ջան, ես ուզում եմ շուկա գնալ, ո՞նց պիտի գնամ…

— Ա՛յ, ուղիղ կգնաք այս փողոցով մինչև հրապարակը, ապա փոստի շենքի մոտով դուրս կգաք շուկա։

Միլիցիոներն ուզում էր գնալ, բայց Հրանուշ մայրիկը նրան կանգնեցրեց։

— Տղա՛ ջան, հարցնելն ամոթ չլինի, բա ո՞րն է Ամիրյանի փողոցը…

— Ա՛յ, հենց այս է, որ կա,— պատասխանեց միլիցիոները։

— Ո՞րը…

— Որտեղ ես ու դու կանգնած ենք, մայրի՛կ։

— Ամիրյանն եմ ասում, տղա՛ ջան,— Հրանուշ մայրիկին թվաց, որ խոսակիցը լավ չի լսում։

— Դե ես էլ Ամիրյանի փողոցն եմ ասում էլի, մայրի՛կ,— պատասխանեց միլիցիոները ժպտալով։

— Վա՛հ… Ամիրյանն այսպես չէր, մատա՛ղ,— զարմացած նորից շուրջը նայեց Հրանուշ մայրիկը։ Միլիցիոները գլխի ընկնելով, թե ինչումն է բանը, սիրալիր ժպտաց և ասաց.

— Վաղո՞ւց է, ինչ քաղաքում չես եղել։ Քո տեսած Ամիրյանի փողոցը չկա, սա նոր Ամիրյանն է։

— Նո՞ր…

Հրանուշ մայրիկը շնորհակալություն հայտնեց և շարունակեց ճանապարհը։ Գնում էր, շուրջը նայում, և մտածում, թե ինչպե՞ս կարճ ժամանակամիջոցում այդ փողոցը փոխվեց։ Հանկարծ նրա հայացքը կանգ առավ մի փոքրիկ տան վրա։ Նա բացագանչեց.

— Հա էլի… Ճիշտ է, ա՛յ հրեն մեր քավոր Գալուստի տունն է… Անցորդները նայում էին Հրանուշ մայրիկին։ Նրա աչքերն ուրախությունից այն-



պես փայլեցին, կարծես մի լավ խաղալիք գտած երեխա լիներ։ Երկար նայեց քավոր Գալուստի տանը, ապա նրա դիմացի մեծ շենքերին և մտածեց. «Ի՜նչ քոսոտել է քավոր Գալուստի տունը. մի ժամանակ կարգին բան էր»։

Եվ շարունակեց իր ճանապարհը։ Նա հիացմունքով էր նայում շուրջը։ Նրան շատ էր զարմացնում, թե ինչու՞ մարդիկ այդպես անտարբեր են անցնում փողոցով։ Մի՞թե իրենք չեն կառուցել այս բոլորը։ Նա կանգ առավ մի բազմահարկ, վարդագույն շենքի առջև։ Թվում էր, թե իրեն ծանոթ էր այդ շենքը. բայց որտեղ էր տեսել՝ չէր կարողանում հիշել։

— Է՜... —ինքն իրեն ասաց նա,— ինց որ այդ հսկա շենքը մարդ լինի, որին մի ուրիշ տեղ հանդիպած լինես...

* * *

Երեկոյան նրանց տանն էին հավաքվել նրա մեծ ընտանիքի անդամները՝ շնորհավորելու ավագ որդուն ծննդյան օրվա առթիվ։ Սենյակը լցված էր ուրախ քրքիջով, ծիծաղով, կանչով. բայց Հրանուշ մայրիկը լուռ մտածում էր։ Բոլորը նկատեցին այդ։ Երբ սկսեցին հետաքրքրվել, նա պատմեց իր տեսած շենքի մասին։

— Ինչ որ տեղ տեսել եմ այդ շենքը. ախր ծանոթ էր, շա՜տ ծանոթ...

— Ո՞ր շենքը, տատի՛,—հետաքրքրվեց մեծ թոռը։

— Ա՛յ, Ամիրյանի վրա, վարդագույն կամարներով շենքը,—պատասխանեց Հրանուշ մայրիկը։

Մեծ թոռը վազեց հարևան սենյակը և բերեց մեծ թղթի վրա գծագրված մի շենքի նկար։

— Սա՞, տատի։

— Հա՛, հա՛, այդ է որ կա։ Ախր գիտեմ, որ մի տեղ տեսել եմ... մեր տանն եմ տեսել, Գարեգինիս մոտ եմ տեսել, երբ նա այստեղ նստած աշխատում էր։

Այդ շենքի հեղինակը նրա ավագ որդին էր։ Բոլորը ժպտացին։

Մայրիկը հուզված ոտքի ելավ։ Նա դիմեց մեծ որդուն և ապա բոլորին.
—Ապրե՛ս, զավակս, ապրե՛ք զավակներս... շատ ապրեք... —Նա հպարտությամբ նայեց իր զավակներին և նրան թվաց, որ բոլորովին նոր կառուցված Ամիրյանի փողոցի և այդ շենքի կառուցման վրա ինքն էլ է իր աշխատանքը դրել։ Եվ նա աչքերը սրբեց։ Ընտանիքի անդամները շրջապատեցին մայրիկին, ասես ուզում էին գրկել նրան։

Դիմացի պատից կախված մեծ առաջնորդի նկարը նայում էր այդ մեծ ընտանիքին և կարծես թե բաժանում նրանց ուրախությունը։

# ՆԱԽՇԻԿԸ

Գ. ՍԵՎՈՒՆՑ

Նկ. ԱՐ. ԲԵՔԱՐՅԱՆԻ

1.

Հորթերի մեջ Ծաղիկը ամենից կայտառն էր և չարաճճին։ Նա և Թզուկը գոմի առաջ, կանաչների մեջ, իսկական ներկայացումներ էին տալիս։ Բրդի մալանչի պես փափլիկ ու խատուտիկ Թզուկը մեկ-մեկ հաչելով իբր թե հարձակվում էր հորթերի վրա։ Բոլոր հորթերը փախչում էին դես ու դեն, իսկ Ծաղիկը ականջները խըլշած, սպառնալից մոտենում էր շնիկին։

Այս անգամ արդեն Թզուկն ինքն էր մռմռալով փախչում։ Հորթը պոչը վեր ցցած հետամտում էր նրան երբեմն մինչև գետափը, երբեմն էլ մինչև Այծասարի ստորոտը։ Երկսով որոշ ժամանակ անհետանում էին ծնկահաս կանաչի մեջ, հետո նորից հայտնվում։

Վերադարձին սովորաբար առջևից վազում էր Ծաղիկը, իսկ նրա ետևից՝ Թզուկը։ Հոգնելուց հետո միայն կարծես նրանք հաշտվում էին։ Ծաղիկը մոտենում էր, հոտոտում իր խաղընկերոջը, իսկ Թզուկը պառկում էր գետնին, չորս թաթիկները վեր բարձրացնում։

Այն ժամանակ տղաներից մեկն ու մեկը, նրանց մատնացույց անելով, ծիծաղում էր.

— Տեսեք, տեսեք, Թզուկը գերի է հանձնըվում...

Եվ տղաները Ծաղիկին ու Թզուկին նորից էին գրգռում իրար դեմ։ Չէ՞ որ մյուս հորթերից ոչ մեկը նրանց այնպես չէր զվարճացնում, ինչպես Ծաղիկը։

2.

Բայց ահա նա հիվանդացավ։ Գոմում նրան առանձնացրին։ Նա պառկել էր կողքի վրա, թուլացած գլուխը դրել կանաչ խոտին։ Սև, հստակ աչքերում անտակ թախիծ կար։ Համարյա ոչինչ չէր ուտում. ո՛չ խոտ, ո՛չ քուսպ և ոչ էլ կաթ։

Ռաֆիկի հայրը՝ հորթապահ Մինասը սանատորիայում էր, իսկ անասնաբույժ Վաղինակը գնացել էր քաղաք։ Հորը փոխարինում էին Ռաֆիկը և մայրը, որը գոմում քիչ էր մնում. գալիս էր, մատղաշներին կերակրում ու գնում տուն, երեխաներով զբաղվում։ Մնացած ժամանակ հորթերով զբաղվում էր ինքը՝ Ռաֆիկը։ Ծաղիկի հիվանդությունը նրան և մորը շատ վշտացրեց։

Մայրը տխուր նայում էր հորթին և ասում.

— Սրան մի բան չպատահի... Հայրիկիդ ինչ պատասխան պիտի տանք։

Ռաֆիկն իր մայրիկից քիչ չէր մտահոգված։ Անցյալ տարի նրա հայրը հորթերի լավ խնամքի համար պարգևատրվել էր «Աշխատանքային արիության համար» մեդալով։ Հայրը հաճախ էր ասում, որ եթե այս տարի գործերը հաջող գնան, ինքը մի նոր շքանշան կստանա։ Իսկ Ռաֆիկը շատ էր ցանկանում, որպեսզի իր հայրիկն էլ Աշոտի հոր՝ կոլխոզի նախագահ Մովսեսի չափ շքանշաններ ունենա։ «Ծաղիկին, որ մի բան պատահի, հայրիկի պատիվը կընկնի», մտածում էր նա։ Իսկ Ծաղիկը արդեն շատ վատ վիճակում էր։ Բուժակը նրան տարբեր դեղեր տվեց, բայց ոչ մեկը կարծես չօգնեց։

Առավոտյան ֆերմայի վարիչը և բրիգադիրը եկան, գննեցին նրան.

— Վայ թե չապրի, Արտավա՛զդ,— ասաց բրիգադիր Վազգենը ֆերմայի վարիչին։

Ֆերմայի վարիչ Արտավազդը նորից գննեց Ծաղիկին և քիչ մտածելուց հետո ասաց.

— Վատ է, որ ոչինչ չի ուտում. եթե ուտեր՝ կփրկվեր։

— Բա ի՞նչ անենք...

Այդ հարցին ֆերմայի վարիչը չկարողացավ պատասխանել։ Ուշադիր բժիշկի պես մեկ էլ գննեց հիվանդին, ապա ոտքի կանգնելով տխուր հառաչեց.

— Ափսոս։

Հետո նրանք գլխահակ դուրս գնացին ֆերմայի գոմից։

3.

Ռաֆիկը մնաց։ Նա նստեց հիվանդ հորթի մոտ, լուռ նայեց նրա թղթի պես ճերմակ ճակատին, թաց դնչին։

Պատուհանից ներս ընկած արևի շողի տակ հորթի խոշոր, սև աչքերը փայլփլում էին ուլունքի պես։ Նրանցում կարծես արցունք էր կուտակվում։

Ռաֆիկը գլուխը մոտեցրեց նրա գլխին, նայեց աչքերի մեջ և, կոկորդում ձայնը խեղդելով, շշնջաց.

— Մեռնում ես, Ծաղիկ...

նրանց։ Նրանցից ոչ մեկը չէր հասկանում, որ հարևան մսուրի մոտ իրենց ընկերը՝ միշտ կայտառ ու ժիր Ծաղիկը ծանր հիվանդ է։

Անհայտ է Ռաֆիկն ինչքան ժամանակ էր այդպես լուռ նստել, մեկ էլ, ինչ որ բան հիշելով, վազեց դեպի դուրս։

Դրսում Ռաֆիկը նայեց աջ ու ձախ և ապա շարունակեց վազել դեպի մոտ գետակը, ուր իր ընկերներից մի քանի հոգի արդեն լողանում էին։ Հևիհև մոտենալով ընկերներին, հարցրեց.

— Չտեսա՞ք ուր գնացին Արտավազդ քեռին և Վազգեն քեռին...

— Ա՜յ, մտան դարբնոց...

— Ի՞նչ է պատահել, Ռաֆիկ...

— Ծաղիկը սատկե՜լ է...

Ընկերներից ոչ մեկի հարցին չպատասխանեց. շարունակեց վազել դեպի դարբնոց, որի դռան մոտ երկու թամբած ձի էր կապած։ Տղաներից Արամն ու Վաչիկը հետևեցին նրան։



Նա ցանկանում էր ինչ որ փաղաքշական խոսքեր ասել, բայց չէր կարողանում։ Հենց այդ պահին պոչը շարժելով նրանց մոտեցավ Թզուկը։ Նա շեղաչք նայեց մեկ Ռաֆիկին, մեկ խոտի վրա պառկած Ծաղիկին։ Դե, իհարկե, Ծաղիկը այս անգամ շնիկին ուշադրության չարժանացրեց։ Ռաֆիկը նույնպես։ Երեքով լուռ նստած էին։ Մյուս մսուրների մոտ գտնվող հորթերը հետաքրքրությամբ նայում էին

Տեղ հասնելով, Ռաֆիկը մոտեցավ ֆերմայի վարիչին և կցկտուր ասաց.

— Քեռի Արտավազդ, անցյալ տարի Լոբան որ հիվանդացավ, էլի բան չէր ուտում, քեռի Վարդանը հայրիկին ասաց մորը բերեք, թող ծծի... Հետո հայրիկը գնաց, բերեց մորը...

— Հիշում եմ, հիշում եմ,— ընդհատեց նրան ֆերմայի վարիչը և դիմեց բրիգադիր Վազգենին։— Խելոք բան է ասում,

Վազգեն։ Բայց Ծաղիկի մայրը բրուցելոզով հիվանդ է։ Չի կարելի։

Քիչ մտածելուց հետո ավելացրեց.

— Ահա թե ինչ. գնա Օհան քեռու մոտ՝ Այծասարի տակը, Նախշիկ կովին բեր, տես կուրծ կտա՞ թե չէ։ Իմ անունից ասա։ Սպասիր գրեմ։

Ֆերմայի վարիչը հանեց իր ինքնահոս գրիչը և ծոցատետրի թերթիկի վրա երկտող գրեց.

— Վերցրու, կտաս իրեն։ Եթե կուրծը վերցրեց, կեսօրին էլ կկերակրեք, իսկ երեկոյան մենք կգանք։

— Շատ լավ,— գլխով արեց Ռաֆիկը, ձեռքով ճակատի քրտինքը սրբելով։ Այժմ նա արդեն ուրախ էր և հուզված։

Որոշ տեղ վազելով գնալուց հետո Արամը հարցրեց.

— Իսկ եթե կուրծ չտա՞, Ռաֆիկ։ Ուրիշի մայր է, չէ՞։

— Չի տա՞,— իր հերթին հարցրեց Ռաֆիկը, կանգ առնելով։ Մի պահ մտածելով նա դիմեց մյուս ընկերոջը.— Լսիր, Վաչիկ, ես ու Արամը գնանք Նախշիկին բերենք, դու վազիր մեր տնից մի քիչ հաց բեր։

— Ինչի՞ համար։

— Վազիր, հետո կիմանաս։

Վաչիկը գնաց։

Ռաֆիկն ու Արամը զրուցելով շարունակեցին իրենց ճանապարհը։

— Բայց կարող է կուրծ չտալ, Ռաֆիկ,— ասաց Արամը։— Այն ժամանակ ի՞նչ պետք է անենք...

Գնում էին և չէին իմանում Նախշիկը Ծաղիկին կուրծ կտա՞, թե ոչ։ Չէ՞ որ ֆերմայում ընդունված օրենք էր՝ հորթը ծնվելու օրից մորից անջատում էին և ձեռքով կերակրում։ Ոչ մի կով կրծով չէր կերակրում իր հորթին։

4.

Մոտ մի ժամ հետո Ռաֆիկը Նախշիկին կամաց-կամաց տարավ դեպի գոմը։ Արամը և Վաչեն գնում էին կողքերից։ Հրապուրվելով հացի պատառներով, Նախշիկը ներս մտավ գոմը։ Նա բնավ չէր հասկանում փոքրիկների միտքը. շարունակում էր անուշ անել հացի պատառները, որոնք գնալով փոքրանում էին, որովհետև հացը վերջանալու վրա էր։

Ահա և այն մսուրը, որի մոտ նստած էր հիվանդ Ծաղիկը։

Նախշիկը խեթ նայելով մոտեցավ հորթին։ Նրա կուրծն արդեն շատ մոտ էր Ծաղիկի գլխին։

Տղաները սրտատրոփ հետևում էին Նախշիկի ամեն մի շարժումին։

— Բիժի՜, բիժի՜,— կանչեց Ռաֆիկը, ցանկանալով որպեսզի Ծաղիկը բարձրացնի գլուխը և ծծի Նախշիկի կուրծը։ Բայց հորթը հիմարի պես նայում էր իր գլխավերևից կախված չորս պտուկներին, Նախշիկի մեծ կրծին և կարծես ծուլանում էր գլուխը բարձրացնել։

— Գլուխը բարձրացրու, բարձրացրու,— շշնջաց Ռաֆիկը Արամին, իսկ ինքը շարունակեց Նախշիկի ճակատը քորել։

Արամը Նախշիկի կրծի մի պտուկը մոտեցրեց Ծաղիկի դնչին.

— Դե ծծիր է, լավն է...

Այդ պահին, անհայտ է որտեղից, երեվաց Թզուկը և քիչ էր մնում գործը փչացներ։ Նախշիկը խրտնեց։ Ռաֆիկը նրան հազիվ պահեց իր տեղը։ Նորից նրա կրծի պտուկը մոտեցրեց հորթի դնչին։

Եվ հանկարծ...

Ծաղիկն սկսեց ծծել։

Անսովոր խտտոցից Նախշիկը ոտն անհանգիստ շարժեց, բայց Ռաֆիկը և ընկերները գիտեին կովի հետ վարվել։ Նրանցից մեկը քորեց կովի ճակատը, մյուսը, կողքը, երրորդը գավակը... Եվ յուրաքանչյուրը դիմում էր կովին կամ հորթին.

— Թող ծծի, Նախշիկ, մեղք է...

— Ծծի՜ր, Ծաղիկ ջան, ծծի՜ր...

Քիչ հետո Ծաղիկին քաջալերելու կարիքը չկար։ Անուշ կաթի համն առնելով, նա ծծում էր և աշխուժությամբ գլուխը շարժում...

Տղաները հրճվում էին։

5.

Պատահեց այնպես, ինչպես և պետք է լիներ։ Նախշիկն ու Ծաղիկն իրար սովորեցին։ Հիվանդ հորթը գնալով կազդուրվեց և երկու շաբաթից հետո նորից սկսեց թռչկոտալ, խաղալ Թզուկի հետ։

Ֆերմայի վարիչը կարգադրեց Նախշիկին անջատել Ծաղիկից։ Բայց, բանից պարզվեց, որ դա ավելի դժվար է, քան կուրծ տալ սովորեցնելը։

Ամեն օր Նախշիկն արոտավայրից փախչում էր, գալիս գոմի մոտ կանգնում և



բարձրաձայն, երկարաձիգ բառաչում, պոզահարում գոմի դռները... Կարծես ասում էր.

— Բա՜-լի՜-կի՜ս եմ ուզո՜ւմ...

Քեռի Օհանը ոչ մի կերպ չէր կարողանում նրան վերադարձնել նախիրի մոտ։ Նա գանգատվում էր, թոնթորում, չարանում. Մի անգամ նույնիսկ ձեռքի մահակով խփեց Նախշիկին։ Այդ որ տեսան Ռաֆիկն ու Արամը, քիչ մնաց կռվի բռնվեն քեռի Օհանի հետ։

Նույն օրը Ռաֆիկը հավաքեց իր օղակի պիոներներին և հայտնեց տեղի ունեցածը։

— Նախշիկը Նախիրում չի մնում, քեռի Օհանը նրան խփեց... Եկեք Նախշիկին մենք պահենք...

Տղաները դեմ չէին։ Նրանք Նախշիկին շոյելով, փաղաքշելով տանում էին արոտավայրը, ամենալավ տեղերն արածացնում... Եվ որովհետև միշտ նրանով զբաղվում էին, նա չէր փախչում, գոմ չէր գալիս. Դեռ ավելին՝ օրեց-օր կաթն ավելացնում էր։

Օղակի մի ուրիշ հավաքույթում տղաները որոշեցին հինգ հորթ ևս իրենց խնամքի տակ վերցնել։ Գնացին, ֆերմայի վարիչին ասացին այդ մասին։ Նա դեմ չէր։ Տղաներն իրենց խնամքին հանձնված հորթերին շատ լավ էին նայում. ժամանակին նրանց կերակրում էին, լվանում, մաքրում

*հետևում, որպեսզի ավելի մեծ մատղաշները չնեղեն... Ընդամենը մի շաբաթ հետո ամեն օր յոթ հոգի Ռաֆիկի հետ միասին հետևում էին, թե ինչպես անասնաբույժը կշեռքի վրա նոր քար է ավելացնում և հրճվում էին, երբ նա հայտարարում էր.*

*— Ծաղիկն ավելացել է 900 գրամով... Լորան՝ 950...*

*Եվ դա մի օրվա ընթացքում։*

*Ֆերմայի մյուս հորթերը տղաների խնամքի տակ գտնվող հորթերի պես չէին աճում։ Այդ մասին սկսեցին խոսել կոլխոզի ժողովներում։ Դրա լուրը տարածվեց մյուս գյուղերում, հասավ նաև քաղաք։*

*Քաղաքից եկավ մի մարդ, կոլխոզի նախագահին ասաց.*

*— Լսել ենք, որ ձեր գյուղում պատանի անասնապահներ կան, որոնց խնամած հորթերի կենդանի քաշն օրական ավելանում է 900 գրամով։*

*— Այո, կան,— ասաց կոլխոզի նախագահը։— Հրաշալի պիոներներ են։*

*— Նրանք կմասնակցեն Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսին։ Խնդրում եմ այդ տղաներին կանչեք, ծանոթանանք...*

*Քիչ հետո, Ռաֆիկի օղակի պիոներները կոլխոզի գրասենյակում էին։ Քաղաքից եկած միջահասակ, տարիքոտ մարդն ուրախ դիմեց նրանց.*

*— Դե, տղերք, պատրաստվեցեք Մոսկվա գնալու... Բայց առայժմ պատմեցեք, թե ինչպես եք խնամել հորթերին...*

*Եվ տղաներն իրար ընդհատելով պատմում էին, հրճվում այն մտքից, որ իրենք մասնակցելու են Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսին։*

---

# ԹՈՌՆԻԿԻ ՆՎԵՐԸ

*ՆԻՆԱ ԽԱՉԱՏՐՅԱՆ*

*Նկ. Ռ. ՏԵՐ-ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԻ*

Մարտի ութին, ասա՛, ես
Ի՞նչ նվեր տամ, տատի՛կ, քեզ,
Մի զույգ գուլպա՞, ակնոցնե՞ր,
Թե՞ տիկնիկն իմ գանգրահեր։
— Ի՛մ աննման, վարդերես,
Տատը մատաղ լինի քեզ,

Ես ուզում եմ, որ կյանքում
Սիրես դու գիրք և ուսում,
Լավ սովորես, մեծանաս
Եվ պիտանի մարդ դառնաս։
Դա կլինի ինձ համար
Քո նվերը շատ հարմար։





# ԳԱՐՆԱՆԱՅԻՆ ՊԱՏԿԵՐ

Ա. ՆԵԴՈԳՈՆՈՎ
(Ստալինյան մրցանակի լաուրեատ)

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Պահպանել եմ ու նորոգել
Սարյակի հին բույնը նորից.
Գարնան պես նա հյուր է եկել
Ինձ Նեղոսի տղմուտ ափից:
Ողջո՛ւյն, փոքրիկ իմ բարեկամ,
Քանի՞ ցերեկ, քանի՞ գիշեր
Դու թռչելով ինձ մոտ եկար.
Ասա՛, սարյակ իմ լավ ընկեր,

Քեզ հարա՞վն է արդյոք գերում,
Թե՞ հյուսիսը հեռո՛ւ, հեռո՛ւ.
Ո՞վ է ասա՝ քեզ հարազատ,
Նե՞գրը արդյոք, տղա՞ն կազակ:
Ու սարյակը ծառի ճյուղից
Երգեց անուշ ու դուրեկան,
Նրա դայլայլը անթախիծ,
Ասես եղավ ինձ պատասխան:

*Փոխադրեց՝ Հ. ՍԵՎԱՆ*

ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ ԵՎ ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ

## Մենք կոչ ենք անում

Մենք, Երևանի № 44-րդ դպրոցի 10-րդ դրուժինայի 3-րդ ջոկատի պիոներներս ջոկատի հավաքույթում որոշեցինք 1951 թվականի գարնանից ստանձնել մի փողոցի ծառերի խնամքը, գրել և ծառերից կախել նրանց կենսագրությունները: Մեր նախաձեռնության մասին հայտնեցինք դրուժինայի խորհրդին, որը հավանություն տվեց մեր որոշմանը և մենք սկսեցինք աշխատանքը:

Այժմ մենք ամբողջ ջոկատով հսկում և խնամում ենք Նար-Դոսի փողոցի հացենիները և թղկիները: Ամեն օր ջրում ենք փխրեցնում նրանց արմատների հողը:

Մենք, փոքրիկ տախտակներից պատրաստված ցուցանակների վրա, գրել ենք այդ ծառերի կենսագրությունները, անունները, որտեղի՞ց և ե՞րբ են բերված, քանի՞ տարեկան են և այլ տեղեկություններ:

Կանցնի մի քանի տարի և փողոցի ծառերը բոլորովին անճանաչելի հսկաներ կդառնան: Այն ժամանակ անցորդները կտեսնեն մեր պատրաստած ցուցանակները և կիմանան, թե ինչպե՞ս է մեծացել ամեն մի ծառը:

Մենք կոչ ենք անում Երևանի բոլոր պիոներներին և դպրոցականներին հետևել մեր օրինակին: Վերցրեք մատաղ ծառերի խնամքը և տնկեցեք նորերը: Կազմեցեք ծառերի կենսագրությունները: Մեր հայրենի քաղաքի բոլոր ծառերը թող ունենան իրենց կենսագրությունները, իրենց վկայականները:

№ 44-րդ դպրոցի 10-րդ դրուժինայի
3-րդ ջոկատի պիոներներ




Ժ. ՄԱՐԳԱՐՅԱՆ
Լ. ՆԱԶԱՐՅԱՆ

Լուսանկ. Վ. ՍԵՎՈՅԱՆԻ

Ջոկատի հավաքույթն արդեն վերջացել էր, սակայն 44-րդ դպրոցի պիոներական սենյակում դեռ արտակարգ աշխուժություն էր տիրում: Երրորդ ջոկատի պիոներները հավաքույթի տպավորության տակ էին:

Նրանք հավաքույթում Երևանի բոլոր պիոներներին ու դպրոցականներին կոչ էին արել, որ ամեն մեկը խնամի և աճեցնի երկու ծառ: Իրենք վերցրել էին դպրոցի շրջակա փողոցների ծառերի շեֆությունը:

Ամեն մի օղակի հանձնարարված էր մի փողոց:

— Աղջիկնե՛ր, ավելի լավ չի՞ լինի, որ ուսումնասիրենք մեզ հանձնված ծառերի պատմությունը,—հանկարծ ասաց Սիման:

Պիոներներն ուրախացան: Նրանք դեռ չէին պատկերացնում, թե ինչպես կարելի է ուսումնասիրել ծառերի պատմությունը: Բոլորն էլ սկսեցին այդ մասին ինչ-որ բան մտածել: Նրանք շատ էին ուզում իմանալ, թե Սիման ինչ կասի, բայց նա դուրս թռավ պիոներական սենյակից: Դպրոցի միջանցքում հասավ ջոկատավարին, և կանգնեցրեց նրան:

— Ընկե՛ր Լուիզա,—հևալով սկսեց նա,—եկեք ամեն մի ծառի մասին տեղեկություն հավաքենք և առանձին ցուցանակի վրա գրենք նրա կենսագրությունը:

Նա մի պահ լռեց, ձանը շնչեց և ապա շշնջալով ավելացրեց.

— Կփակցնենք ճյուղերից: Դա ավելի կմտերմացնի մեզ նրանց հետ:

Այդ պահին նրան մոտեցան օղակավար Գոհարիկը և մի քանի պիոներներ:

Նրանք բոլորը լսեցին ու հավանություն տվին Սիմայի առաջարկին:

* * *

Մի քանի օր հետո պիոներները դպրոց եկան և բերեցին գործիքներ, փաներա և ներկեր:

Նրանք արդեն եղել էին Մոլոտովյան ռայսովետի կոմունալ բաժնի այգեգործ ընկեր Հովհաննիսյանի մոտ, լսել նրա զրույցը Հայաստանի տարբեր շրջաններում աճող ծառերի տեսակների և նրանց խնամքի մասին: Հետո դիտել էին Նար-Դոսի փողոցի և Միկոյանի պողոտայի բոլոր ծառերը և գրանցումներ կատարել:

Վերադառնալով պիոներական սենյակ, նրանք գործի անցան:

Ջոկատի խորհրդի նախագահ Շողիկ Շահինյանի ցուցմունքով պիոներները բաժանվեցին առանձին խմբակների: Ամեն մի խմբակ մուրճ, սղոց և փաներա ստացավ:

Առաջին հերթին հարկավոր էր փոքրիկ ցուցանակներ պատրաստել և գեղեցիկ տառերով վրան գրել ծառերի կենսագրություններն ու խնամողների անունները:

Հենց այդ աշխատանքին էլ նրանք ձեռնամուխ եղան:

Շուտով պիոներական սենյակը լցվեց մուրճերի թխթխկոցով, սղոցների խզխզոցով, որոնք միախառնվեցին պիոներների ուրախ ճիչերին:

— Դե՛, աղջիկնե՛ր, կտրված փաներաներ հասցրեք,—վրձինը ձեռքին ձայն տվեց Ռիմա Շտայանը: Այդ պահին նա պատրաստ-



10-րդ դրուժինայի երրորդ ջոկատի խորհուրդը քննարկում է ծառերի պատմության հարցը: Նիստը վարում է խորհրդի նախագահ Շողիկ Շահինյանը (աջից երկրորդը)

գիտեր, թե որ ծառը պետք խնամի ինքը: Նրանք գիտեին նաև, թե որտեղ էին փոսեր փորելու:

Նրանք նոր բերած տնկիները արևից պատսպարելու համար դրին մի ստվերոտ տեղում և գործի անցան:

Աղջիկներից մի քանիսը մոտեցան ջոկատավարին և այդ ծառերի համար պարարտանյութ խնդրեցին:

— Աղջիկնե՛ր, պարարտանյութը նոր տնկվող ծառերի համար է, — ասաց ընկեր Լուիզան:

Ցուցանակներ փակցնելու աշխատանքը նույնպես արագ էր ընթանում: Այստեղ աղջիկներին օգնում էր արագաշարժ Սիման: Նա ճարպիկ շարժումներով բարձրանում էր ծառերը և ճյուղերին ամրացնում ցուցանակները:

Մյուս պիոներները, որոնք արդեն վերջացրել էին իրենց աշխատանքները, հավաքվում էին փոսերի մոտ: Այնտեղ աշխատանքն ավելի էր աշխուժանում:

Պիոներների աշխատանքը գրավեց դպրոցի մյուս ջոկատներին: Ահա գեներալ Բաղրամյանի անվան ջոկատի մի խումբ պիոներներ մոտեցան նրանց: Շողիկը նրանց հայտնեց իրենց նոր նախաձեռնության մասին և ցույց տվեց արդեն կատարված աշխատանքը:

— Հիանալի գործ է,—միաբերան համաձայնեցին Բաղրամյանի անվան ջոկատի պիոներները:—Մենք էլ ձեզ կօգնենք:

— Ես էլ, ես էլ... մեր տունը մոտ է, հիմա բրիչ կբերեմ, —ավելացրեց Կլարան և վազեց տուն:

Քիչ հետո բրիչը ձեռքին նա մոտեցավ փոսերին: Նրան միացան նաև նրա ընկերուհիները:

Աշխատանքը նոր թափ ստացավ:

— Շուտով ամբողջ դրուժինան դուրս կգա ծառեր խնամելու, — հանդիսավոր կերպով հայտարարեց դրուժինայի խորհրդի նախագահ Նորան:

Երրորդ ջոկատի պիոներները գոհ էին, որ իրենց օրինակելի նախաձեռնությունը գործի է վերածվում:

վում էր առաջին ցուցանակի վրա գրել խորհրդի նախագահի անունը:

— Դու շատ կնոգնես, դեռ սպասիր,— ասաց Արշավանքը և մի քանի կտրատած փաներա հանձնեց Ռիմային:

— Թամարա՛, Թամարա՛, եկ օգնիր, թե չէ սրանք ինձ կնեղեն,—ձայն տվեց Ռիման:

— Վախեցա՞ր, վախեցա՞ր,—այս ու այն կողմից ասացին պիոներները:

Եվ պիոներական սենյակում լսվեց մանկական ուրախ քրքիջը:

* * *

Հետևյալ օրը, դասերից հետո, պիոներները դուրս եկան փողոց: Բուսաբանական տրեստից նրանք նոր տնկիներ և քիմիական պարարտանյութ էին ձեռք բերել. իսկ դպրոցի դռնապանից 2 դույլ և 2 բահ վերցրել:

Գարնան առաջին օրերն էին:

Արևի պայծառ ճառագայթների տակ հալչում էր վերջին ձյունը: Ամբողջ շրջապատը թարմությամբ էր շնչում:

Պիոներները խմբերով մոտեցան Նար-Դոսի փողոցի հացենիներին: Նրանցից ամեն մեկը



# ԴՊՐՈՑԻ ճանապարհին

Որքան մեծ եղավ իմ ուրախությունը, երբ պիոներական հավաքույթում իմացա մեր ջոկատի հրաշալի նախաձեռնության մասին։ Ամեն մի պիոներ պետք է խնամի երկու ծառ, ուսումնասիրի նրա պատմությունը։ Ես ջոկատի առաջ խոստացա խնամել Նար-Դոսի փողոցում տնկված ծառերից երկուսը։

Հաջորդ օրն անցա աշխատանքի։ Ամենից առաջ հարկավոր էր փոքրիկ ցուցանակների վրա գրել ծառի կենսագրությունը, ո՞րտեղ է աճել ու քանի՞ տարեկան է։ Այդ բանում ինձ օգնեց մեր քաղաքի Մոլոտովյան ռայոնի կոմունալ բաժնի աշխատակից ընկեր Հովհաննիսյանը։ Ես իմացա, որ ինձ հանձնարարված ծառերը հացենիներ են։ Նրանք սկզբում տնկվել են Երևանի բուսաբանական այգում։ Երկու տարի այնտեղ մնալուց հետո հացենիները փոխատնկվել են Նար-Դոսի փողոցը։ Նրանք այժմ ութ տարեկան են։ Այդ տվյալները ես գեղեցիկ տառերով գրեցի փոքրիկ ցուցանակների վրա ու կախեցի ծառերի ճյուղերից։ Բայց սա դեռ բոլորը չէ։

Ամեն օր ես շուտ եմ դպրոց գալիս, խնամում եմ իմ սիրելի ծառերը. փորում եմ հողը, շաղախում զոմաղբով։ Արդեն իմ խնամած հացենիները բողբոջել են, թրթուռները ճյուղերին նստած երգում են։

Հիմա գարուն է։ Ես հպարտ եմ, որ մեր դպրոցի ճանապարհին աճել ու բարձրացել են իմ խնամած հացենիները։

ԳՈՀԱՐ ՄԱՆՈՒԿՅԱՆ
(Երևանի № 44-րդ դպրոցի 3-րդ ջոկատի պիոներ)



Դրուժինայի խորհրդի նախագահ Նորա Մխիթարյանը և երրորդ ջոկատի պիոներներ Ա. Բեգզադյանը և Վ. Սարգսյանը ծանոթանում են ծառի կենսագրությանը։



Երրորդ ջոկատի ջոկատավար Լուիզա Զոհրաբյանը և Մ. Պոլոյանը ցուցանակները կախում են ծառերից:

# ՄԻԱՀԱՄՈՒՌ ՈՒԺԵՐՈՎ

Հավաքույթից անմիջապես հետո ես՝ մոտեցա 10-րդ դրուժինայի խորհրդի նախագահ Նորայրին։ Նա իմացավ մեր ջոկատի նախաձեռնության մասին և ամուր սեղմեց ձեռքս։ Նորան խոստացավ հենց վաղը դրուժինայի խորհրդի նիստ հրավիրել։ Այնտեղ պետք է լսվեր մեր ջոկատի առաջարկությունը։ Մենք անհամբեր սպասում էինք դրուժինայի խորհրդի նիստին։

Հաջորդ օրը դպրոցի դիրեկտոր ընկեր Բախշինյանը կանչեց մեզ և ասաց, որ դրուժինայի խորհուրդը և ինքը համաձայն են մեր առաջարկին։ Մենք շատ ուրախացանք։ Պիոներներն իսկույն գործի անցան։

Ամեն՝ մեկը խնամելու համար ստացավ երկու ծառ։ Պիոներներից մի քանիսը պատրաստեցին փոքրիկ ցուցանակներ, որտեղ գրեցին ծառերի կենսագրությունը և իրենց անունները։

Այժմ ամեն օր փողոցում հնչում է մեր պիոներների աշխատանքի երգը։ Նրանք փորում են հողը, ջուր բերում և ջրում ծառերը, փակցնում ցուցանակներ։

Մեր խնամած ծառերը արդեն բողբոջել են։ Շուտով կանաչ սաղարթը կզարդարի նրանց մերկ ճյուղերը։

ՇՈՂԻԿ ՇԱՀԻՆՅԱՆ
(3-րդ ջոկատի ջոկխորհրդի նախագահ)

# ԳԱԳԻԿԻ ՏՆԿԻՆ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ — Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Դաշտ, անտառ, հովիտ
Ծաղկել են, զուգվել,
Կոլխոզնիկները
Հանդ են դուրս եկել:
Հավքերը նախշուն
Երգում են, թռչում,
Մանուկներն ուրախ
Իրար են կանչում:

Փոքրիկ Գագիկը
Մի տնկի առած,
Կոլխոզի բակից
Դուրս եկավ գնաց:
Դպրոցի այգում
Մի փոսիկ փորեց
Արմատը տնկու
Հողին պահ տվեց:

Ամեն առավոտ
Դպրոց գնալիս
Իր փոքրիկ ծառին
Խնամք էր տալիս:

Մի օր էլ ահա,
Երբ լույսը բացվեց,
Տնկին իր վերջին
Բողբոջը տվեց:
Զեփյուռն էլ գարնան
Փչեց մեղմ, անուշ,
Ու շարժեց ծառի
Ճյուղերը քնքուշ:

Ամբողջ ջոկատով
Պիոներական
Գագիկի ծառին
Տեսության եկան:
Մեկը նրանցից
Ջերմորեն ժպտաց,
Եվ ընկերներին
Նա այսպես ասաց.
— Գագիկի նման
Աշխատենք սիրով,
Զարդարենք այգին
Նոր-նոր ծառերով:



# ՀԻՆԳ ԾՈՎԵՐԻ ՋՐԱՆՑՔԸ




*Ս. ԻՍԱՀԱԿՅԱՆ*
(Տեխնիկական գիտությունների թեկնածու)

*Գետային տրանսպորտը մեր երկրի ներքին հաղորդակցության միջոցներից ամենաէժանն է։ Ո՛չ ցամաքային և ոչ էլ օդային տրանսպորտը չեն կարող մրցել նրա հետ իրենց էժանությամբ։*

*Գետային ճանապարհները բնությունն է պատրաստում։ Մեզ մնում է շատ քիչ վառելիք ծախսել նավերը գործի գցելու համար և տրանսպորտը պատրաստ է։ Բայց գետային ճանապարհը մի մեծ թերություն ունի. այդ այն է, որ ցանկացած ուղղությամբ երթևեկել չի կարելի. պետք է անպայման հետևել գետի հունին։ Հիմա մեր մարդիկ վերափոխում են բնությունը։ Նրանք փոխում են նաև այնպիսի մեծ գետերի հունը, ինչպիսին Վոլգան է կամ Դոնը։*

*Դեռ Պետրոս առաջինի օրոք, մարդիկ մտածեցին միացնել Վոլգան և Դոնը, որպեսզի հնարավոր լինի գետային ճանապարհներով Ռուսաստանի հյուսիսից ապրանքներ տեղափոխել հարավ՝ դեպի Սև ծով։ Բայց այս ծրագիրը հնարավոր չեղավ իրականացնել, որովհետև ցարական Ռուսաստանը շատ աղքատ էր և հետամնաց։*

*Սոցիալիզմի երկրում մարդկանց դարավոր երազանքը իրականություն դարձավ։*

*Մեր պարտիայի ու կառավարության նախաձեռնությամբ Վոլգա—Դոն ջրանցքի շինարարությունն սկսվեց Հայրենական Մեծ պատերազմից առաջ. բայց պատերազմը խանգարեց գործին։ Հիմա ջրանցքի կառուցումը գնում է մեծ թափով և պետք է ավարտվի 1951 թվականին։*

*Վոլգա—Դոն ջրանցքը միացնելու է Ստալինգրադ քաղաքը Դոն գետի վրա գտնըվող Կալաչ քաղաքի հետ։ Սա ջրային ճանապարհներով կկապի մեր երկրի հինգ ծովերը՝ Սպիտակ, Բալթիկ, Կասպից, Ազովի և*

Սև ծովերը։ Այն ժամանակ հնարավոր կլինի Սովետական Միության եվրոպական մասում հյուսիսից հարավ ապրանքներ տեղափոխել միայն ջրային ճանապարհով։

Սպիտակ ու Բալթիկ ծովերը միանում են Ստալինի անվան ջրանցքի միջոցով. Մոսկվա գետը Վոլգայի հետ միանում է Մոսկվայի անվան ջրանցքով, իսկ Վոլգան Սև ծովին կմիանա Վոլգա—Դոն ջրանցքի և Դոն գետի միջոցով։

Նավարկելի ջրանցքներն ունենում են 50—100 մետր լայնություն և նույնքան էլ խորություն, որպեսզի երկու նավ կարողանան անցնել իրար կողքով։ Սա դժվար չէ իրականացնել։ Բավական է շատ հող փորել և այդ չափերի ջրանցքը կստացվի։ Դժվարությունն այստեղ ուրիշ է։ Վոլգա գետը ծովի մակերևույթից հաշված Դոն գետից բավականին բարձր է։ Եթե Ստալինգրադ ու Կալաչ քաղաքներն ուղիղ գծով միացնենք, շատ մեծ թեքությամբ ջրանցք կստացվի. իսկ այդպիսի ջրանցքով նավերը չեն կարող նավարկել։ Ջրանցքի սկիզբը՝ Վոլգան ծովի մակերևույթից բարձր կլինի, իսկ Դոնը՝ ցածր։ Այսպիսի ջրանցքով ջուրն այնքան արագ կհոսի, որ եթե նավերը հոսանքի ուղղությամբ գնան՝ կխորտակվեն, իսկ եթե հոսանքին հակառակ գնան՝ կդժվարանան։ Այդ դժվարությունը հաղթահարել են ինժեներները։ Նրանք հնարել են մի բարդ կառուցվածք, որը կոչվում է նավարկելի շլյուզ։

Ամբողջ ջրանցքը բաժանում են մի քանի աստիճանների, ինչպես պատկերված է քարտեզում։ Բայց նավերը աստիճանաձև հունով լողալ չեն կարող։ Դրա համար ամեն մի աստիճանի մոտ կառուցում են մի շլյուզ, որը շեմքի գլխից վերցնում է նավը և հանգիստ իջեցնում ցած։ Եթե նավն ուզում է բարձրանալ, վերցնում և հանգիստ բարձրացնում է շեմքի վրա։

Նավագնաց շլյուզը երկու կողմերից բետոնյա պատերով պարփակված մի ջրավազան է։ Առջևից և ետևից նա մեծ դռներ ունի, որոնք կարող են բացվել և փակվել հատուկ մեխանիզմների միջոցով։ Նրանք ունեն նաև հատակային անցքեր, որտեղից ջուրը լցվում կամ դատարկվում է։

Երբ նավն ուզում է մեկ աստիճան իջնել, շլյուզը լցնում են ջրով, մինչև հորիզոնը հավասարվի շեմքից վերև գտնվող ջրի հորիզոնին, ապա վերևի դռները բացում են և նավը հանգիստ մտնում է շլյուզի մեջ։ Վերևի դռները փակում են։ Նավը որոշ ժամանակ մնում է կանգնած այս ավազանում։ Հատակային անցքից ջուրը հեռացնում են ավազանից։ Նավը ջրի հորիզոնի հետ միասին դանդաղ իջնում է։ Երբ հորիզոնները շլյուզում և ներքևում հավասարվում են, ջրի հեռացումը ընդհատում են։ Ապա բա-




Ա.Բ. ՇԼՅՈՒԶԻ ԴՌՆԵՐ. Գ. ՓԱԿ ԱՆՑՔ. Դ. ԲԱՑ ԱՆՑՔ




ցում են ներքևի դռները և նավը դուրս է գալիս շլյուզից։ Այստեղ նա կարող է ազատ լողալ, մինչև հաջորդ շեմքին հասնելը։ Այս ձևով ամեն մի շեմքի մոտ նավը կանգնում է և շլյուզի միջոցով իջնում։

Այսպիսի 13 շլյուզ կկառուցվեն Վոլգա—Դոն ջրանցքի վրա։

Կառուցվում է նաև մի մեծ հիդրոէլեկտրակայան Ցիմլյանսկայա քաղաքի մոտ։








*ՌԱՍՈՒԼ ՌԶԱ*

*Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ*

Գիշեր էր։ Կարծես թե խավարի սև քողը չորս կողմից մեխել էին գետնին։ Մի Աուն քայլում էր ընկերների հետ, քարշ տալով զինվորական մեծ կոշիկները։

Դա դերասան-կամավորների մի թատերախումբ էր, որը ռազմաճակատում սպասարկում էր չին մարտիկներին։

Մի Աուն չէր հիշում հորը։ Նա երեք տարեկան էր, երբ մայրը թոքախտից մեռավ։ Մի Աուն լավ ձայն ուներ։ Երբ նա հանդիպեց թատերախմբին, ծերունի դերասան Լին Լուն հարցրեց.

— Ի՞նչ շնորհք ունես, իմ քաջ տղա։

Մի Աուն պատասխանի փոխարեն երգեց իր հորինած երգը՝ փոքրիկ պարտիզան Ձին Այի մասին։



Ձին Այը մութ գիշերով
Բռնեց ճամփան ամայի,
Աջից լուսինն է գնում,
Ձախից ստվերն է Այի։
Մութ է, երկար է ուղին։
Ո՞ւր ես այդպես գնում, Ձին,
Ինչպե՞ս ես դու վստահում
Անհայտ ու սև խավարին.
Ի՛մ բարեկամ, ի՛մ պաշտպան,
Դու իմ փոքրի՛կ պարտիզան։

* * *

Խրամատում Ձին Այը
Իր հայրիկին հանդիպեց։
Հայրը ասաց.— Ընկերնե՛ր,
Մի զինվոր էլ հայտնվեց։
Բարի լինի վերջը իր։—
Գրկեց որդուն սիրալիր.
— Նուշ աչքերով իմ բալիկ,
Ճապոնին լա՛վ նանաչիր։
Ի՛մ բարեկամ, ի՛մ պաշտպան,
Դու իմ փոքրի՛կ պարտիզան։

* * *

Խունացած ընկավ մի անգամ
Անտառում քավ ու մթին։
Այդ ժամանակ Ձին Ային
Ճապոնացիք նանկեցին.

Ամպոտ երկի՜նք, կես գիշե՜ր.
Ամենուրեք պահակներ.
Ճապոնացիք բռնեցին
Պարտիզանին անվեհեր:
Ի՛մ բարեկամ, ի՛մ պաշտպան,
Դու իմ փոքրի՜կ պարտիզան:

* * *

— Խոսի՛ր,— ասաց ճապոնը,—
Ո՞ւմ տղան ես, ո՞վ ես դու,
Ասա՛, ինչպե՞ս սիրտ արիր
Անցնել անտառն անճարկու:
Չինաստանն ի՞նչ է մեր դեմ,
Հազարը ի՞նչ է մեր դեմ,—
Սպառնում էր ճապոնը,
Այը լուռ էր, խստադեմ:
Ի՛մ բարեկամ, ի՛մ պաշտպան,
Դու իմ փոքրի՜կ պարտիզան:

* * *

Երբ հալվեց ձյունը փափուկ
Նրա ոտքի հետքերի,
Ծառի ճյուղից կախեցին
Պարտիզանին այն փոքրիկ:
Ճյուղին թվաց՝ նա քնեց,
Եվ ճյուղը ցած խոնարհվեց,
Սակայն քնից այդ խորունկ
Էլ Չին Այը չզարթնեց:
Ի՛մ բարեկամ, ի՛մ պաշտպան,
Դու իմ փոքրի՜կ պարտիզան:

* * *

Սպասեցին ողջ գիշեր,
Բայց ետ չեկավ Այը էլ:
Տանջվում էին, և մարդկանց
Կարծես բե օձ էր խայթել:
Առավոտյան դաշտում բաց
Հարյուր ճապոն կար փռված:
Պարտիզանները այնտեղ
Տեսան Ային բրատված...
Ի՛մ բարեկամ, ի՛մ պաշտպան,
Դու իմ փոքրի՜կ պարտիզան:

* * *

Ստվերախիտ ծառի տակ
Փորեցին խոր մի շիրիմ,
Դագաղ դրին Այի հետ
Փոքրիկ զենքը մտերիմ:
Եվ հուշարձան կանգնեցվեց:
Ոչ ոք արցունք չթափեց:
«Չինաստանում,— ասին,— դեռ
Չի՛ ավարտվել մարտը մեծ»,
Ի՛մ բարեկամ, ի՛մ պաշտպան,
Դու իմ փոքրի՜կ պարտիզան:

*Այս երգը լսելով, ծերունի դերասան Լին Լուն կրծքին սեղմեց Սի Աուին։ Նրան թատերախմբի մեջ ընդունեցին։ Կարճ ժամանակից հետո Սի Աուի երգը հայտնի դարձավ ամենքին։ Բոլոր մարտիկները երգում էին այդ երգը…*

*Երբ կրակի առաջավոր գծում ներկայացում էր տրվում, ունկնդիրները ծափահարում էին, պահանջում բեմ կանչել փոքրիկ Սի Աուին։*

*Սի Աուն բեմ էր դուրս գալիս, ըստ իր սովորության ետ գցելով ճակատին թափվող մազերը։ Կկոցելով իր շեղ աչքերը, նա ժպտադեմ գլուխ էր տալիս մարտիկներին։ Երբ սկսում էր երգել, նրա դեմքին վաղորդյան մշուշի նման վշտի մի թեթև ստվեր է ընկնում. իսկ նրա թուխ, աշխույժ աչքերն անշարժանում էին մի կետի վրա։*

*Մի անգամ դերասանները ներկայացում էին տալիս։ Ծերունի դերասան Լին Լուն հպարտությամբ էր պատասխանում նրանց, ովքեր աղմկելով պահանջում էին բեմ կանչել Սի Աուին։ «Հիմա նա կգա, այս րոպեին», ասում էր նա։*

*Հերթը հասավ Սի Աուին, իսկ նա բեմ դուրս չէր գալիս։ Բոլորը պահանջում էին կանչել նրան։ Ամեն կողմից աղմկում էին։*

*Եվ հանկարծ ձայները լռեցին։ Բեմին ուղղված բոլոր հայացքները քարացան։ Ծերունի Լին Լուն ծանր քայլերով մոտենում էր՝ գրկած Սի Աուին։ Նա կանգ առավ*

բեմի մեջտեղում։ Ծերունի դերասանի ձեռքերին պառկած էր Սի Աուի դիակը։ Մանկան մարմինը դեռևս չէր սառել։ Թշնամու նենգ գնդակն ընդմիշտ լռեցրել էր Սի Աուին։ Մարտիկների շարքերում լսվեց մի մեղմ երգ։ Կարծես թե մայրն էր հեկեկում իր երեխայի դիակի վրա։

Այդ երգը հետզհետե ուժեղանում էր, հետզհետե ավելի պարզորոշ էր լսվում. վշտի ծանրության տակ ավելի էին խոնարհվում մարդկանց գլուխները։ Բոլոր մարտիկները երգում էին Սի Աուի երգը.

Երբ ճալվեց ձյունը փափուկ
Նրա ոտքի հետքերի,
Սառի ճյուղից կախեցին
Պարտիզանին այն փոքրիկ։
Ի՛մ բարեկամ, ի՛մ պաշտպան,
Դու իմ փոքրի՛կ պարտիզան,
Դու իմ փոքրի՛կ պարտիզան։

*Թարգմ. Պ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*






Նկ. ՀՈՎՀ. ՇԱՎԱՐՇԻ

— Մի րոպե լռեցե՛ք,—ասաց օղակավար Հրանտը և նայելով տանից բերած զանգահար մեծ ժամացույցին, ավելացրեց,— ուղիղ մի րոպե։

Տղաները լռեցին։ Ժամացույցի սլաքը դանդաղորեն անցավ մի րոպեն։

— Հիմա լսեցեք,—շարունակեց Հրանտը.—մինչև որ մենք մի րոպե լուռ էինք, առաջին տպարանի կազմատան բանվորուհին 5 դասագիրք կարեց. իսկ եթե նա ամեն օր հինգ րոպե խնայի, մեկ ամսում յոթ հարյուրից ավելի դասագիրք կտա։ Ռոտացիոն մեքենան մեկ րոպեում երեք հազարից ավելի օտտիսկ է տպագրում, իսկ լինոտիպիստ-գրաշարը մոտ երկու հարյուր նիշ է շարում, այսինքն 3 տող։

Հրանտից անմիջապես հետո ելույթ ունեցավ Միքայելը։ Նա պատրաստել էր մի զեկուցում՝ «Մեկ րոպեի մասին» թեմայով։

Եվ ահա, թե Միքայելը ինչ պատմեց տղաներին։

— Երկու հազար հինգ հարյուր տարի առաջ Հունաստանում ապրում էր հայտնի առակախոս Եզոպոսը։ Մի անգամ, երբ նա զբոսնում էր դաշտում, մի ինչ-որ անցորդ նրան հարցրեց՝ «Մինչև քաղաք հեռո՞ւ է»։ Առակախոսը միայն մի բառ ասաց՝ «Գնա՛»։ Անցորդն ուսերը նեղացած վեր քաշեց և բարկացած շտապեց առաջ։ Մի քանի վայրկյան հետո Եզոպոսը նրա ետևից կանչեց. մինչև քաղաք երկու ժամվա ճանապարհ է։

— Հապա ինչո՞ւ դու ինձ միանգամից չպատասխանեցիր,—զարմացավ անցորդը։

— Ես չէի կարող իմանալ, թե դու որքան ժամանակում կհասնես. հիմա տեսա, որ դու արագ ես քայլում,—պատասխանեց Եզոպոսը։

— Եվ, իհարկե, նա ճիշտ էր մտածում,—ասաց Միքայելը։—Կրիայի մի շաբաթվա անցնելիք ճանապարհը, մարդը երկու-երեք ժամում կարող է անցնել։

Թե ինչքան գործ կանի մարդը իր կյանքի ընթացքում, կարելի է իմանալ, երբ տեսնես նրա աշխատանքը։ Եթե մենք նույնիսկ շատ լավ ենք կատարում աշխատանքը, բայց երկու-երեք ժամի փոխարեն վատնում ենք մի շաբաթ, նշանակում է վատ աշխատողներ ենք։ Իսկական աշխատողը գործը և՛ լավ է անում, և՛ արագ։ Մեր գործարաններում ստախանովականները հաշվում և խնայում են ամեն մի վայրկյանը, ամեն մի րոպեն։ Չէ՞ որ ամեն կորցրած րոպեն՝ մետաղի մի տոննա է, հազարավոր կիլովատ ժամ էներգիա։ Իսկ մենք որքա՜ն րոպեներ ենք իզուր տեղը ծախսում,—վերջացրեց Միքայելն իր զեկուցումը։

Այդ հավաքույթին պատրաստվել էին ոչ միայն Հրանտն ու Միքայելը, այլև օղակի բոլոր պիոներները։ Տղաներից շատերը հայտնի գրողների ու գիտնականների գրվածքներում հետաքրքիր ասույթներ գտան ժամանակի մասին։

— Ես գիտեմ, թե Սուվորովն ինչ է ասել ժամանակի մասին,—ասաց Գուրգենը,—նա ասել է՝ «Ես գործում եմ ոչ թե ժամերով, այլ րոպեներով»։

— Քիչ խոսիր, շատ գործիր։

— Մի այսօրն ավելի լավ է, քան երկու վաղը։

— Ժամանակը ոսկի է.—այս ու այն կողմից բացագանչեցին տղաները։

—Իսկ գիտե՞ք, տղերք, թե մի կոճակ կարելու համար ինչքան ժամանակ է հարկավոր,—ասաց Հրանտը։—Չէ՞ որ շատ անգամ մենք գանգատվում ենք, որ կոճակ կարելու ժամանակ չունենք։ Ես առաջարկում եմ մրցում կազմակերպել, թե ո՞վ ավելի լավ և արագ կկարի կոճակը։

Այդ անսովոր մրցման նախապատրաստման պատասխանատուն էր Տիգրանը։ Նա գրպանից հանեց տասը կանոնավոր ձևով կտրտած կտոր, թել, տասը կոճակ և տասը ասեղ ու բաժանեց ներկաների միջև։

— Հիմա ուղիղ ժամը հինգն է։ Ուշադրությո՛ւն, սկսեցի՛նք, — հրաման տվեց Տիգրանը։

Ստացվեց, որ մի կոճակ կարելու համար հարկավոր էր մեկ րոպեից ոչ ավելի։

Խոսք խնդրեց Վլադիկի հայրը, Գևորգ Խրիմյանը, որին տղերքը հրավիրել էին հավաքույթի։

— Ես մեծ հետաքրքրությամբ լսեցի այն բոլորը, ինչ որ այստեղ ասացին։ Ես միայն կցանկանայի, որ այդ բոլոր լավ խոսքերը ժամանակի մասին, լոկ խոսքեր չլինեին, որպեսզի ձեզանից ամեն մեկը իսկապես սովորի տիրապետել իր ժամանակին, գնահատել ու խնայել այն։ Ես գիտեմ, որ իմ որդին՝ Վլադիկը, ինչպես և ձեզանից շատերը, դեռ չեն սովորել այդ։ Ես ուզում եմ տղայիս կյանքից մի օրինակ բերել։

Մի կիրակի առավոտ մայրը խնդրեց, որ Վլադիկը գնա հացի։ Խանութը մեր տան դիմացն է և հաց գնելու համար տաս րոպեն էլ բավական է։ Անցավ տասնհինգ րոպե, քսան րոպե, բայց Վլադիկը չկար։ Քառասուն րոպեից հետո նա հայտնվեց։

— Այսքան ժամանակ ո՞րտեղ էիր,— հարցրի ես նրան։

— Մի՞թե շատ ժամանակ է,—անկեղծորեն զարմացավ Վլադիկը։—Ես հանդիպեցի Մուկուչին և մենք մի քիչ խոսեցինք երեկվա ֆուտբոլի խաղի մասին։

Պարզվեց, որ Վլադիկը, ինչպես և հավանական է Մուկուչը, նույնիսկ չէին էլ մտածել, որ ամբողջ կես ժամ զրուցել են։ Ես, իհարկե, դեմ չեմ, որ ընկերները խոսեն միմյանց հետ, բայց ախր ամեն բան իր ժամանակն ունի։

Նույն երեկո մենք որոշեցինք ամբողջ ընտանիքով կինո գնալ։ Վլադիկն ասաց, որ ինքը դեռ երեկ է պատրաստել բոլոր դասերը։ Մնացել է կրկնել աշխարհագրությունը և քառասուն րոպե հետո ինքը միանգամայն ազատ կլինի։

«Չէ՞,—մտածեցի ես,—համենայն դեպս Վլադիկը առաջին հերթին գործն է անում»։

Ես նստեցի թերթ կարդալու։ Տասնհինգ րոպե հետո նայեցի Վլադիկի կողմը և տեսա հետևյալ պատկերը։ Վլադիկի սեղանին անկանոն թափթփված էին գրքերը, իսկ ինքը տղան չոքել էր գրքերի պահարանի առաջ և ինչ-որ բան էր փնտրում։

— Աշխարհագրության դասագիրքս չեմ կարողանում գտնել,—շփոթված ասաց նա։

Մի քանի րոպե հետո պրպտումներին մասնակից եղավ ամբողջ ընտանիքը՝ և՛ ես, և՛ մայրը, և՛ նրա փոքրիկ քույրը՝ Լուսիկը։ Մենք դասագիրքը փնտրեցինք սեղանի տակ, բազմոցի տակ, մահճակալների տակ, ամանեղենի պահարանում և նույնիսկ Լուսիկի խաղալիքների մեջ։

Մեր պրպտումներն ընդհատեց դռան թխկոցը։ Ներս մտավ տղայիս ընկերը՝ Թաթիկը։

— Դու աշխարհագրության դասագիրքը երեկ մեր տանն ես թողել, վերցրո՛ւ, —ասաց նա։

Ահա այսպիսի, թվում է, թե մանրունքները խլում են մեր թանկագին ժամանակը։ Դրա համար էլ ձեր ժամանակը երբեք չի բավականացնում, — վերջացրեց Գևորգ Խրիմյանը։

Բոլոր տղաները սկսեցին ելույթներ ունենալ։ Նրանք իրենց կյանքից հիշում էին Գևորգ Խրիմյանի պատմածի նման դեպքեր։ Այսպես ամեն մեկը պատմելու մի բան գտավ։

Տղաները որոշեցին սովորել խնայողաբար վերաբերվել իրենց ժամանակին։

Հավաքույթի վերջում Հրանտն ասաց.

—Կիրակի օրը ամբողջ ջոկատով կգնանք սառցադաշտ։ Հավաքվում ենք դպրոցի մոտ ուղիղ ժամը տասն անց տասը րոպեին։ Ես հույս ունեմ, որ այսօրվա հավաքույթից հետո կարիք չկա հիշեցնելու, որ ոչ ոք չուշանա։

Հավաքույթը շատ դուր եկավ տղաներին։



# ՖԵՐՄԱՅԻ ՃՆՃՂՈՒԿՆԵՐԸ

(Ուսուցչ-բնասերի հուշատետրից)

Վ. ԱՆԱՆՅԱՆ

Ամպը գոռաց, նրա դղրդոցից ծեր Ղարախաչը ցնցվեց. Լոռու ձորը բազմապատկեց որոտը։

— Ջա՛ն, ձայնից մատաղ, գարունը եկավ,—կանչում էին Ծաղկավանի կոլխոզնիկները և ամպերին նայելով՝ սպասում գարնան առաջին անձրևներին։

Գոռգոռոցն ուժեղացավ, Լալվարի անտառներում ամպրոպներ ճայթեցին և երկնքից կարծես նոսր վարագույրներ կախվեցին ընդարձակ սարահարթի վրա։ Հորդ անձրև եկավ։ Բոլորը հասկացան, որ դա վերահաս գարնան վերջին գրոհն էր ձմռան մնացորդների դեմ։

Երբ անձրևը դադարեց և ամպերի տակից լվացված ու մաքրված երկրին նորից ժպտաց արևը, Լոռու սարահարթում և Լալվարի լանջերին այլևս ձյուն չէր մնացել։

Ձմռան անվրդով քնից արթնացավ բնությունը։ Իրենց գլխիկները դուրս հանեցին

հազար ու մի ծիլ ու ծաղիկ ու ժպտացին արևին։

Լոռու լեռներից քչքչան ու փրփրարաշ ջրեր էին ցած վազում, ժայռերի ջերմ ստորոտներում իր կապույտ գլխիկն էր հանում լալազարը, անտառներում թափված տերևների տակից դուրս էին գալիս մատղաշ սինդրիկն ու եղինջը։

Ծաղկավանի կոլխոզի հոտերը փռվել էին Լալվարի լանջերին, ձիերը վազվզում էին ախոռների մոտ, իսկ չարաճճի ցուլիկները հողը քանդելով՝ կռվում իրար հետ։

Ֆերմայի կովերը, ինչպես բրիգադիր Բաբկենն էր ասում «Արևի վաննա էին ընդունում», իսկ հորթերը տոտինգ էին տալիս։

* * *

Ծաղկավանի կոլխոզի անասնապահական ֆերման տեղավորված է լեռներից եկող երկու առվակների միջև ընկած սեպաձև հարթության վրա։

Առուները պղտորվել են ու վարարել։ Սարից նոր եմ իջել և որսորդական հրացանն ուսիս կանգնել եմ նրանցից մեկի ափին ու տարվել Լոռու չքնաղ բնության գարնանային զարթոնքով։ Իմ դիմաց, ֆերմայի լուսավոր գոմերի ու սիլոսի աշտարակների ետևում դեռ կանգնած են կոլխոզի հսկա դեզերից մի քանիսը։

Բրիգադիրները դեզերից խոտ են ստանում։ Ծեր պահակը հրացանն ուսին աչալուրջ հսկում է դեզերին ու գոռում։

— Ա՛յ տղա, է՜յ, որ մի ծեղ ես վեր գցել՝ ձեռքիցս չես պրծնի...

Խոտ տանողին էր սպառնում։ Ապա նա առաջ եկավ, կռացավ, հավաքեց գետնին ընկած խոտի շյուղերը և որոտաց բրիգադիրի վրա։

— Սրան Լոռի կասեն, էգուց մեկ էլ տեսար ձյուն եկավ, խոտ որտեղի՞ց ես գտնելու։

— Ոսկան Ավագն է,—նրա մասին ինձ ասաց կոլխոզնիկներից մեկը։

Մոտեցա՝ բարևեցի։

Նա թավ հոնքերով, թավ բեղերով, առողջ թշերով և ամուր կազմվածքով մի ծերունի էր։

— Քեռի Ավագ, տեսնում եմ, որ անասունների կերը լավ ես պահպանում, ոչ մի ծեղ չի կորչում,—ծերունուն խոսեցնելու համար գովեցի ես։

— Է՜, ինչ պահել, մի տես ծտերը ոնց են գողանում,—պատասխանեց նա։

Իրոք, ճնճղուկները դեզերի վրայից շյուղեր էին փախցնում։

— Նրանց տարածն ինչ պիտի լինի որ, —ասացի ես։

— Ո՞նց թե՝ ինչ պիտի լինի։ Մեր ֆերմայում հազար ծիտ կա, մի հաշվի՛ր։ Նրանք ուրախ-ուրախ միասին գալիս են իրենց բնի համար խոտ տանելու։ Հազար բուն կշինեն մեր ֆերմայի ծածկերի տակ, մի հաշվիր, թե ինչքա՜ն խոտ են տանում։

— Դու էլ հրացանդ դեմ արա՝ կոտորիր,—դիտմամբ ասացի ես։

Ծեր որսորդը խեթ-խեթ նայեց ինձ։

— Իսկապես, մարդիկ որ խոտ տանելիս մի քանի շյուղ են վայր գցում, բարկանում ես, իսկ ինչո՞ւ ես թույլ տալիս, որ ճնճղուկները գողանան հանրային խոտը։ Բոլորին կոտորիր,—խոսեցնում եմ ես ծերունուն։

— Ախր ձեռքս չի բարձրանում նրանց վրա...

— Ինչո՞ւ։

— Դրանք մեր կոլխոզի բարեկամներն են։ Տեսնո՞ւմ ես այս խոտը, նույնիսկ այս խոտի մի մասը որդերի բերանից դրանք են փրկել։ Էլ արտերին ու այգիներին դրանց տված օգուտը չեմ հաշվում։ Ես ո՞նց ձեռք բարձրացնեմ դրանց վրա։

Ապա լռեց, ծխամորճը լցրեց ու կարծես ինքն իրեն ավելացրեց.

— Չէ՜, Ոսկան Ավագն այնպիսի բան չի անի... Թող տանեն, իրենց աշխատանքից են տանում... Թող տանեն բներ շինեն, ընտանիքներ կազմեն, շատանան...

Մինչ մենք զրուցում էինք, ճնճղուկները ոստոստելով շարունակում էին խոտի շյուղեր կրել։

— Ո՞ւր են տանում, հա՞նդ, — հարցրի ծերունուն։

— Չէ՛, չորանոցի ծածկի տակ։

— Իսկ հանդում բուն շինող չկա՞։

— Չէ, բոլորն էլ ֆերմայում են։ Հան-

դում այնքան թշնամի կա,— ծոր ավեց Ավագ քեռին,— է՛լ բազե, է՛լ ուրուր, է՛լ աղվես. ո՞վ ասես, որ այդ խեղճերի բույնը չի քանդում։ Զենք չունեն, որ պաշտպանվեն։ Դե, նրանք էլ մարդկանց են ապավինել։ Դրա համար էլ հանդերում ծիտ, ծիծեռնակ, սարյակ համարյա չկա, բոլորն էլ շենքերում են, մարդկանց մոտ։ Գնանք ցույց տամ դրանց բները։

Եվ ծերունին լուռ ծխելով, ինձ առաջնորդեց կոլխոզի ծխախոտի չորանոցը, որ դեզերից շատ հեռու չէր։

Բազմաթիվ ճնճղուկներ մի-մի շյուղ կտուցներին ամուր բռնած, մտնում էին չորանոցի տանիքի տակ և իրենց բեռն այնտեղ թողնելով՝ նորից շտապում դեպի խոտի դեզերը։

Ի՜նչ եռ ու զեռ էր այդ արևոտ օրը...

Բոլոր նշաններից երևում էր, որ նրանք իրենց բները հյուսում են չորանոցի առաստաղի ճեղքերում, պատերի գլուխներին և ծածկը պահող գերանների վրա։

— Մի խոտը բերանին այն ծտին նայիր,— շշնջաց ծերունին՝ մատը դեպի վեր մեկնելով։— Մի նրա արարմունքը տես...

Ես վեր նայեցի. փոքրիկ «փումփուշը» գլխին մի ճնճղուկ, խոտի երկար շյուղը կտցին, կանգնել է սյան գլխին ու մեզ է նայում։ Քիչ դենը՝ առաստաղում մի ճեղք է երևում. հավանաբար բույնն է։

— Ի՞նչ կա որ,— հարցրի ես։

— Լավ մտիկ արա... Երկար մտիկ արա, հետո կհասկանաս,— շշուկով ասաց ծերունին։

Մենք անթարթ նայում էինք այդ ճրնճղուկին։ Զարմանալի բան, բերած խոտը չի տանում առաստաղի ճեղքը և իր տեղում ոստոստելով ու անհանգիստ շարժումներ անելով՝ նայում է մեզ ու ինչ-որ բանի սպասում։

Շատ էր անհանգիստ այդ ծիտիկը. երևում էր, որ ժամանակը շատ թանկ է այդ փոքրիկ աշխատավորի համար։ Շտապում է, երևի ուզում է նորից գնալ կոլխոզի դեզերից «շինանյութ» բերելու իր բնի համար։ Բայց ինչո՞ւ է դանդաղում։

— Սպասում է, որ հեռանանք,— բացատրեց ծերունին.— բայց էլի սպասենք, տեսնենք ինչ հնար է գտնելու...

Ճնճղուկը տեսնելով, որ մենք հեռանալու միտք չունենք, կտցի շյուղը դրեց իր կանգնած տեղն ու չորանոցից դուրս թռավ գնաց։

Ես շուռ եկա, որ գնամ, ծերունին բռնեց իմ ձեռքը։

— Սպասիր, տեսնենք ինչ է լինելու...

Նրա խոսքը դեռ բերանում էր, երբ մի այլ շյուղ կտցին ներս եկավ մեզ ծանոթ փումփուշավոր ճնճղուկը, թառեց իր նախկին տեղը, և տեսնելով, որ մենք դեռ համառորեն կանգնած իրեն ենք նայում, շյուղը դրեց սյան գլխին, մյուս շյուղի կողքին ու հապճեպ դուրս թռավ։

Այնուհետև նա արագ-արագ սկսեց կրել և սյան գլխին կուտակել խոտի չոր ցողունները՝ իր ապագա տան «գերանները»։

Երբ մի անգամ էլ թռավ դեպի դեզերը, որսկան Ավագն ասաց.

— Դե հիմի դռան ետևը կանգնիր ու թաքուն մտիկ արա...

Թաքստոցից, դռան նեղ ճեղքերով մենք մեր հայացքները ուղղել էինք սյան ծայրին ու սպասում էինք։

Ահա նա, մեր փոքրիկ ծանոթը։ Նորից ներս եկավ և տեսնելով, որ ոչ մի կողմնակի աչք չի հետևում իրեն, սկսեց արագ-արագ առաստաղի ճեղքը կրել շինանյութը։ Ո՜նց է կրում, առանց դադարի, մի տեսակ խուճապով ու գաղտագողի...

Կրեց վերջացրեց, ապա մի վայրկյան շունչ առավ, դես-դեն նայեց, թե ոչ ոք չտեսա՞վ ու նորից գնաց դեպի դեզերը։

Ծեր որսորդը ժպտաց և նրա ճակատի կնճիռները հարթվեցին։

— Հասկացա՞ր,— հարցրեց նա նշանակալից։— Փոքրիկ տեղով նա էլ իրեն գաղտնիքն ունի. չի ուզում, որ օտար աչք տեսնի իր բույնը։ Հիմիկուց իրեն ձուտերի կյանքի մասին է մտածում... Բա ասում ես՝ սպանիր, ես դրան ո՞նց սպանեմ...

Ծերունին իր թավ հոնքերի տակից հարցական նայում էր ինձ։ Նրա քամհարված դեմքը ողողվում էր ժպիտով և բարությունը ցոլանում էր խաղաղ աչքերի մեջ։

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԻՉՈՒՐԻՆԱԿԱՆՆԵՐԸ

ՀՐ. ԲԱՏԻԿՅԱՆ
(Բիոլոգիական գիտությունների դոկտոր)

«Մենք չենք կարող բնությունից շնորհներ սպասել, մեր խնդիրն է դրանք վերցնել նրանից»։ Միչուրինի այս խոսքերը մեր առաջավոր գիտնականների, երիտասարդների և պատանիների նշանաբանն են դարձել։ Միչուրինի և Լիսենկոյի օրինակով են աշխատում նաև Հայաստանի գիտական հիմնարկները, կոլխոզները և պատանի միչուրինականները։ Մեզ մոտ այժմ հազարավոր միչուրինականներ կան, որոնք հաջողությամբ կիրառում են Միչուրինի ուսմունքը և բույսերի նոր սորտեր ու կենդանիների նոր տեսակներ ստեղծում։

Գյուղատնտեսական գիտությունների թեկնածու Բաբուկ Գարասեֆերյանը, հատուկ ընտրության միջոցով ստացել է ցորենի մի նոր սորտ, որը «Արմյանկա» է կոչվում։ Այդ ցորենը շատ լավ աճում է Հայաստանի լեռնային շրջաններում. բերքատու է և դիմանում է զանազան հիվանդությունների։ Նրա խոշոր հատիկներից շատ համեղ հաց է ստացվում։ Ստեփանավանում և մի շարք այլ շրջանների կոլխոզներում, մի քանի հազար հեկտար ցանք կա արդեն։ Այդտեղ «Արմյանկան» 4—5 ցենտներ ավելի բերք է տալիս, քան տեղական ցորենները։ Հայաստանի Գիտությունների ակադեմիայի իսկական անդամ Վարդան Գուլքանյանը, գիտությունների թեկնածուներ՝ Սուրեն Պողոսյանը և Գրիգոր Սուրմինյանն ստացել են մի նոր աշնանացան ցորենի սորտ «Արտաշատի 42»։ Դաշտային շրջաններում այդ ցորենը շատ բարձր բերք է տալիս, համարյա թե չի վարակվում բույսերի հիվանդություններով։ Այդ ցորենի ալյուրից թխած հացը համեղ է։





Գիտության թեկնածուներ՝ Ամալյա Մկրտչյանը և Արմենուհի Եղիկյանը ստացել են «Եղվարդի 4»։ Ցորենի այդ սորտը Աշտարակում, Կոտայքում և այլ շրջաններում 7—8 ցենտներ ավելի բերք է տալիս, քան տեղական «Սպիտակահատ» ցորենը։ Հայաստանի միչուրինականներն այժմ ստեղծում են նաև ճյուղավոր ցորենի հետաքրքիր ձևեր։



Լենինականում, ծովի մակերեսից 1.500 մետր բարձրության վրա, Գիտությունների ակադեմիայի պտղաբուծական ինստիտուտի գիտական աշխատողներ՝ Սոֆյա Ազուլյանը և Պետրոս Գարանյանը խաչաձևման և դաստիարակման միջոցով ստացել են տանձի, խնձորի, սալորի, բալի, ելակի և այլ պտուղների բազմաթիվ ցրտադիմացկուն տեսակներ։ Դաժան ցրտերին դիմացող այդ սորտերը հաջող պտղաբերում են նաև Արթիկի, Ամասիայի, Ախուրյանի և այլ շրջանների կոլխոզների միչուրինյան այգիներում։



Շատ հետաքրքիր է Սուրենա Պողոսյանի փորձը։ Նա ստեղծել է սերմերից աճեցրած խաղողի տնկարան։ Մինչև հիմա խաղողը բազմացվում էր միայն ճյուղերի՝ կտրոնների միջոցով։ Դա սովորական եղանակն էր։ Սերմերի միջոցով աճեցրած «Ոսկեհատ», «Արաքսենի» և «Սաթենի» տեսակներն ավելի բարձր բերք են տալիս և լավ



են դիմանում ցրտին, չորությանը և հիվանդություններին։

Խոշոր նշանակություն ունի նաև բամբակենու խորը ծերատումը։ Բամբակենու որոշ ճյուղերը հեռացնելով, այսինքն ծերատելով, մենք ուժեղացնում ենք բույսի սնուցումը, նպաստում ենք բամբակի կընգուղների շուտ բացվելուն և արագացնում բամբակի բերքահավաքը մինչև առաջին ցրտերը։ Այս փորձը զգալի արդյունքներ տվեց. միջին հաշվով մեկ հեկտարից ստացվում է 3—4 ցենտներ ավելի բերք, քան սովորական աճեցման ժամանակ։

*Մեծ աշխատանք են տանում մեր գիտնականները կենդանիների նոր տեսակներ ստանալու համար։ Պրոֆեսոր Աշոտ Ռուխկյանը ստեղծել է ճարպապոչավոր, կիսակոշտաբուրդ ոչխար։ Նոր ցեղի ոչխարները ծանր քաշ ունեն և շատ կաթ են տալիս։*



*Մի խումբ միչուրինականներ աշխատում են Լոռվա խոշոր եղջերավոր անասունների մթերատու ցեղ ստեղծելու ուղղությամբ։ Ճագարաբույծ Բագրատյանը ճագարների նոր ցեղ է ստեղծել։ Այդ ցեղը կզաքիսի մորթու նման գեղեցիկ մորթի ունի։*

*Միչուրինականներն աշխատում են նաև խաղերի, թռչունների նոր ցեղեր ստեղծել, իսկ եղածները կատարելագործել։ Մեծ աշխատանք է տարվում նաև սուբտրոպիկական կուլտուրաների տարածման ուղղությամբ։*

*Պատանի միչուրինականներն ավելի մեծ եռանդով պետք է մասնակցեն մեր բնության վերափոխման մեծ գործին և միշտ հիշեն Միչուրինի տված պատգամները՝*

*«Ես աշխատում եմ բույսերի լավացման ուղղությամբ։ Ասում են, որ ես շատ բան եմ արել։ Ես կասեի՝ այնքան էլ չէ։ Շատ բան պետք է անեն հետագա սերունդները, մասնավորապես դուք, իմ պատանի ընկերներ։ Իմ միակ երազանքն է եղել տեսնել, որ մարդիկ կանգնեն բույսերի առաջ նույն հետաքրքրությամբ, շնչակըտուր, ինչպես նրանք կանգնում են նոր շոգեքարշի, ավելի կատարելագործված տրակտորի, կոմբայնի, ինքնաթիռի և կամ անհայտ կոնստրուկցիա ունեցող մեքենայի առաջ»։*

*Ստեղծենք նոր տեսակի բույսեր և կենդանիներ, որպեսզի արժանի լինենք ստալինյան մեծ դարաշրջանին։*

# ՄՐԳԱՌԱՏ ՄԵՂՐԻՆ

*ԱՆ. ՏԻՏԱՆՅԱՆ*

*Նկ. Հ. ՂԱԶԱՐՅԱՆԻ*

Արաքսի ափից մի ճանապարհ է ձգվում Մեղրի գետի հոսանքն ի վեր, որը օձապտույտ բարձրանում ու մտնում է լեռների գիրկը։ Այդ նոր ճանապարհով մի գյուղից մյուսն են սլանում ավտոմեքենաները։ Գյուղերը վերջանում են, բայց ճանապարհը բարձրանում է մինչև Սպիտակ լիճը, մինչև հավերժական ձյան սահմանը։ Այդ բարձունքից երևում են Արաքսի ափը իջնող բերրի հովիտները, որոնք ծածկված են հռչակավոր նռան, նուշի, սերկևիլի և ընկույզի այգիներով։ Լեռներում վխտում են վայրի ոչխարների ու այծերի հոտերը։ Վայրի այծերը առանձնապես շատ են Ծիրանաձորի քերծերում։

Ամռան շոգին նրանք իրենց ուլիկների հետ միասին արածում են առվակների ծաղկոտ ափերին, իսկ ձմեռնամուտին իջնում են ձորերը՝ Արաքսի հովիտը։

Մեղրու անտառները հարուստ են վայրի մրգերով։ Դրանցով սնվում են արջերն ու վայրի խոզերը։ Երբ աշնանը ծառերի տերևները ոսկեզօծվում են, երբ սարերից փչում է սառը քամին, վարազներն ու ար-

չերը անտառներում ազահությամբ խժռում են վայրի տանձը, խնձորն ու կաղինը: Իսկ բշնամիներից վախեցած եղնիկը, անտառի գեղեցկուհին, իր ձագերի հետ զգուշությամբ թաքնվում է թավուտների խորքերում:

Մեղրու շրջանի գյուղերը թառել են այս վայրերում, շիկակարմիր ժայռերի ուսերին: Նրանք կարծես հսկում են Արաքսի ջրերին ու կանաչով ծածկված լեռնաշխարհին: Փոքրիկ այս հովիտներում ու խորշերում ինչպիսի պտուղներ ասես, որ չկան:

Զարմանալի բնություն ունի այս լեռնաշխարհը: Երբ Կապույտ-ջուղի ուսերը ծածկըված են լինում ձյան հաստ ծածկոցով, Ալիդարայի, Նյուվադիի և Մեղրու մրգաստաններում կոլտնտեսականները ծառերից առատ պտուղներ են հավաքում:

Աշնանամուտին ավելի գեղեցիկ ու ավելի հրապուրիչ են դառնում այս մրգաստանները: Ծառերի վրա ժպտում են կարմրաթուշ նուռը, ոսկեգույն սերկևիլը, թուզը, հյութալի դեղձը, հասունանում է ընկույզը, վազերի վրա շողշողում են խաղողի սև և արևագույն ողկույզները:

Բերկրալի է Մեղրու աշունը: Երբ սկսվում է այգեկութը, գյուղերում էլ աշխատունակ մարդու չեք հանդիպի: Եռուն ու ժրաջան աշխատանք է սկսվում Կոնսերվի գործարանում, մառաններում ու չորանոցներում:

Իրենց առատ բերքը ժամանակին վերամշակման հասցնելու համար կոլտնտեսականներից ամեն մեկը երկու մարդու աշխատանք է կատարում:

Ահա Մեղրու Ստալինի անվան կոլտնտեսության այգիները:

Լեռնային աղբյուրներից իջնող գետը այգեստանները բաժանել է երկու մասի: Այդ գետի ջրերով փարթամացել ու հասակ են քաշել հազարավոր պտղաբեր ծառեր: Այստեղ խաղողի վազերը ձմեռը երբեք չեն թաղում հողի տակ, որովհետև եղանակը մեղմ է, թզի, նռան և արևադարձային ծառերի նուրբ շվերը չեն ցրտահարվում: Ժայռերը, որ սեպաձև դեպի երկինքն են խոյացել, արևի տակ տաքանում են և իրենց ջերմությունը



տալիս շրջակա այգիներին: Այդ բերրի հովիտներում վիթխարի ծառեր են աճել: Տեղ-տեղ թզի ծառերը իրենց փարթամությամբ չեն զիջում ընկուզենիներին:

Կոլտնտեսության օղակավար Իսրայել Գրիգորյանը և հմուտ այգեգործ Վահան բիձան հրաշքներ են պատմում իրենց այգիների բերքի մասին: Նրանք մեզ թզենիներ ցույց տվին.

— Սրանցից մի քանի անգամ բերք ենք հավաքել, բայց մինչև ուշ աշուն պտուղը անպակաս է, մի կողմից քաղում ենք, մյուս կողմից հասունանում է: Մեզանում 450—500 տոննա պտուղ ենք հավաքում կոլտնտեսության այգիներից:

Այս կոլտնտեսությունը Կոնսերվի գործարանին տարեկան տալիս է 75 տոննա թուզ, 45 տոննա սերկևիլ, 30 տոննա ընկույզ,

նուռ, նուշ և այլ պտուղներ: Աշնանը այգիներից ավտոմեքենաները մրգերով լի արկղներ են փոխադրում Կոնսերվի գործարան, իսկ այնտեղից մուրաբաներով, կոմպոտներով ու չոր մրգերով բեռնված սլանում դեպի երկաթգծի կայարան: Այդ պահածոները ուղարկում են մեր երկրի շատ ու շատ քաղաքներ՝ Վլադիվոստոկ, Մուրմանսկ և այլ տեղեր:

Երբ մեր լեռնային շրջաններում ձմեռ է լինում, Մեղրու ռայոնում կոլտնտեսական այգեգործները մշակում են հողը, փոսեր փորում, ջրառատ առուներ պատրաստում՝ գարնանը ծառատունկ կատարելու համար:



# ՄԵՔԵՆԱՆԵՐԸ ՏՆԵՐ ԵՆ ԿԱՌՈՒՑՈՒՄ

*Ս. ՇԱՀՆԱԶԱՐՅԱՆ*
(Ինժեներ)



*Ամեն օր դպրոց գնալիս կամ դպրոցից վերադառնալիս դու տեսնում ես նոր կառուցվող շենքեր և այն էլ ոչ թե մեկ կամ երկու հարկանի, այլ չորս, հինգ և վեց հարկանի: Եվ դա միայն մի փողոցում: Հապա ինչքա՜ն կառուցվող դպրոցներ, բնակելի տներ և այլ շենքեր կտեսնես, եթե թեկուզ մի օր շրջես Երևանի թաղերում:*

*Այդքան շենքերը ձեռքի աշխատանքով կառուցել հնարավոր չէ: Տարիներ են հարկավոր, որ ձեռքով հիմքեր փորեն, քար տաշեն, շաղախ անեն, շինանյութ տեղափոխեն:*

*Եվ ահա մեր կառուցողներին օգնության եկան շինարար մեքենաները:*

*Շենքի կառուցման սկզբից մինչև ավարտը, շինարարական աշխատանքներին մասնակցում են մեքենաները: Ահա ձեզ էքսկավատորը, որը մեծ շենքի հիմքը մի քանի օրում է փորում:*

*Նրա ծանր շերեփը խրվելով գետնի մեջ մինչև մեկ խորանարդ մետր հող ու քար է քանդում հանում, երկար սլաքի օգնությամբ բարձրացնում է և տանում թափում է ավտոմեքենաների մեջ: Ավտոն հողը թափում է առանց մարդու օգնության: Միայն շոֆերը սեղմում է մի կոճակ:*

*Հիմքի տեղը փորված է: Կառուցողներն սկսում են շենքի քարե հիմքը դնել: Այստեղ աշխատանքի են անցնում տրանսպորտյորները, լուծույթ և բետոն-շաղախող և այլ մեքենաները: Տրանսպորտյորը մեխանիկորեն շարժվող մի լայն ժապավեն է, որի տակին անընդհատ պտտվում են գլանակները և ժապավենն առաջ կամ ետ տանում: Շարժվող այդ ժապավենն ուզած ուղղությամբ քար, աղյուս և այլ շինանյութեր է կրում:*

*Հիմքը դնելու և պատերը շարելու ժամանակ ավազի, կրի և ցեմենտի կամ այլ լուծույթ է հարկավոր: Հենց այդ լուծույթն էլ պատրաստում է լուծույթ շաղախող մեքենան:*

Պակաս հետաքրքիր չէ բետոնաշաղախ մեքենան։ Ահա մեծ մի թմբուկ, որի մեջ անշարժ թևեր կան։ Մի հատուկ մեքենա բետոնի համար անհրաժեշտ խիպարը, ցեմենտը և ջուրը լցնում է թմբուկի մեջ։ Թմբուկը պտտվում է ու խառնում բետոնը։



Հիմքի աշխատանքները վերջանալուց հետո, շինարարներն սկսում են պատերը շարել։ Այստեղ էլ մեքենաները մարդուն շատ են օգնում։ Շաղախող մեքենաներին այստեղ ավելանում են բարձրացնող մեքենաները՝ վերամբարձ կռունկը ու զանազան վերհանիչները։

Մոսկվայի բազմահարկ շենքերի կառուցմանն ավելի կատարելագործված վերամբարձներ են մասնակցում։ Նրանք ոչ միայն բարձրացնում են, այլև հորիզոնական ուղղությամբ տեղից տեղ են տանում շինանյութը։

Այդպիսի մի վերամբարձ, որը կոչվում է ԱԲԿ—1, այժմ գործում է Երևանում Ստալինի պողոտայի վրա կառուցվող վեց հարկանի շենքերի շինարարության վայրում։ Այս վերամբարձ կռունկը կանգնեցված է հատուկ երկաթգծի վրա, որով նա առաջ ու ետ է շարժվում։

Հիանալի օգնական է այս հսկան. Նա բեռը հասցնում է շինարարության բոլոր կետերը։ Նա 1000—3000 կիլոգրամ կարող է հասցնել 42 մետր, այսինքն 12 հարկանի շենքի բարձրության։



Այսպիսի վերամբարձը տասնյակ և նույնիսկ որոշ դեպքերում մեկ կամ երկու հարյուր բանվորի ազատում է ձեռքի աշխատանքից։ Սա դեռ բոլորը չէ։

Շատ հետաքրքիր է նաև քար տաշող մեքենան, որ մեր ռեսպուբլիկայի գյուտարարներն են հորինել։

Այժմ Ջերժինսկու գործարանը մի քանի տեսակ քարտաշ մեքենա է արտադրում։ Որ նորակառույցի մոտով էլ անցնես, քարտաշ մեքենաներ կտեսնես։ Դրանք հեշտությամբ տաշում ու հղկում են տուֆը, ֆիլզիտը, տրախիտը և դրանց նման քարերի՝ շատ տեսակներ։

Քար տաշող մեքենան քարերը ավելի լավ է տաշում ու հղկում, քան մարդը։ Ստալինի մոնումենտ-քանդակի, Կուլտուրայի տան և «Արարատ» տրեստի շենքի քարերը մշակել են Ջերժինսկու անվան գործարանի արտադրած քարտաշ դազգահների միջոցով։

Շինարարական շատ ուրիշ մեքենաներ էլ կան։ Օրինակ՝ անտառանյութ, բետոն և այլ շինանյութեր մշակող մեքենաներ։

Օր-օրի վրա մեր մեծ Հայրենիքում ծավալվում է շինարարությունը։

Այդ հսկայական շինարարությունը հաջող տանելու և ավարտելու համար մեր գիտնականներն ու գյուտարարներն անընդհատ կատարելագործում են շինարարական տեխնիկան։

# „ԳԱՐՆԱՆ ԾԻԼԵՐ"

Սպիտակ ձիու վրա նստած է մի երեխա։ Նա յափնջի է հագել։

Շապկի երկնագույն ֆոնի վրա նկարված այս պատկերը գեղեցիկ կերպով արտահայտում է գրողի նպատակը որ նա դրել է «Ես մարտիկ եմ քաջ» ոտանավորի մեջ։ Մանկական գրող Վիկտոր Վարդանյանը այդ, ինչպես նաև «Երբ մեծանամ», «Հոկտեմբերիկ եմ» ոտանավորներում սովետական երկրի մանուկներին ներկայացնում է որպես ջերմ հայրենասերներ։ Նրանք իրենց ծնողների արժանի փոխարինողներ են դառնալու՝ Հայրենիքի պաշտպաններ, աշխատանքային հերոսներ։ Վիկտոր Վարդանյանը կարողանում է մանուկներին հասկանալի, պարզ լեզվով տալ հայրենասիրության օրինակներ։

Նա մանուկների մեջ սեր է արթնացնում դեպի ուսումը։ Ուսմանն են նվիրված «Դեպի դպրոց», «Մեր դպրոցը» ոտանավորները։ Դրանց մեջ խոսվում է գերազանց սովորելու, գիտությանը տիրապետելու մասին։

Սովորաբար երեխաներին հետաքրքրում է մի հարց՝ ինչ դառնալ։ Այս հարցին հեղինակը պատասխանում է այսպես.—բոլոր մասնագիտությունները ու աշխատանքները մեր երկրում լավ են և կարևոր։ Հարկավոր է միայն այնպես սովորել, որ լավ ինժեներ, օդաչու, քարտաշ, ներկարար դառնալ։ Չէ՞ որ այդ բոլոր մասնագետներն էլ մասնակցում են մեր մեծ Հայրենիքի կառուցման գործին։ «Եղբայրս», «Քարտաշ Արտաշը», «Մայրիկները» ոտանավորներում, եղբայրը հերոսի նման կռվել է թշնամու դեմ, իսկ այժմ հերոս է կոլխոզում, Արտաշը ստախանովական շինարար է, մայրիկները օդաչուներ են, չքանչանակիր ուսուցչուհիներ, ինժեներներ, կոլխոզային գյուղի հերոսուհիներ։

Վիկտոր Վարդանյանը երեխաներին սովորեցնում է համառություն։ «Տնակը» ոտանավորում երեխան թղթից, կավից, սառույցից տնակներ է շինում, բայց դրանք ոչնչանում են քամուց, անձրևից, արևից։ Տղան չի հուսահատվում և քարից կառուցում է մի այնպիսի նոր տնակ, որը դիմանում է բոլոր փորձություններին։

Քամին եկավ փչեց հուզված,<br>
Նրակն եկավ, անձրև տեղաց,<br>
Մեկը եկավ, մյուսը գնաց,<br>
Բայց տնակը կանգուն մնաց։

Մյուս ոտանավորներում Վիկտոր Վարդանյանը երեխաներին սովորեցնում է հարգել ուսուցիչներին, մեծերին և ծնողներին, կարգապահ և օրինակելի լինել տանը, դպրոցում և ամենուր։

Վարդանյանը սիրով է պատկերում հայրենի բնության գեղեցկությունները՝ գարունը, աշունը, առվակը, այգեկութը։

Նա ամենից սրտաբուխ տողեր է նվիրում մեր Հայրենիքին և երեխաների մեծ բարեկամ ընկեր Ստալինին, որի ջերմ արևի տակ ծաղկում են գարնանային ծիլերը՝ սովետական ազատ և երջանիկ մանուկները։

Վիկտոր Վարդանյանի ոտանավորների այս գիրքը կոչվում է «Գարնան ծիլեր»։ «Գարնան ծիլերը» գեղեցիկ կերպով նկարազարդել է շնորհալի նկարիչ Վաչե Թևանյանը։

Լ. ԱՍՄԱՐՅԱՆ




Հ. ԳԱՍՊԱՐՅԱՆ
(Սպորտի վարպետ)

Շախմատ լավ խաղալու համար անհրաժեշտ է իմանալ խաղի տեսությունը։ Շախմատի տեսությունը բավականին բարդ է և ընդգրկում է խաղի բոլոր երեք ստադիաները՝ սկիզբ, մեջտեղ և վերջ։ Բայց սկսնակ շախմատիստի համար ամենից ավելի կարևոր է նախ սովորել կոմբինացիա գտնելը։ Կոմբինացիա կոչվում է քայլերի այն սերիան, որի ժամանակ կորցնում ես մատերիալը, շահելու կամ ոչ ոքի անելու համար։

Խնդիրների լուծումը նույնպես օգնում է գործնական խաղերի ընթացքում գտնել կոմբինացիան։ Շախմատիստի զարգացման համար ամենից շատ օգուտ է բերում պարտիաների վերլուծումը։

Հիշեցեք, որ գործնական խաղը ամրացնում է շախմատիստի տեսական գիտելիքները։

Խնդիր № 3
Ա. ԳԱԼԻՑԿԻ




Մատ 2 քայլից





Երբ դուք խաղում եք պարտիան, լավ կլինի գրի առնեք, որպեսզի հնարավոր լինի այն վերլուծել, գտնել ձեր և հակառակորդի սխալները։

Ներկա բաժնում բերում ենք՝ խնդիրը, վերջացած պարտիան և ամբողջ պարտիան։ Խնդիր № 3-ը պատկանում է ռուս հայտնի շախմատիստ, կոմպոզիտոր Ա. Գալիցկուն։ № 4 դիագրամի վրա քայլ անելու հերթը սպիտակներինն է. գտեք սպիտակների համար շահող կոմբինացիան։

Ցածում բերված պարտիայում ցույց տվեք, թե սևերը որտեղ են այնպիսի կոպիտ սխալ անում, որի հետևանքով տանուլ են տալիս պարտիան։

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1. | e2—e4 | e7—e6 | 8 | Фd1—h5+ | g7-g6 |
| 2. | d2—d4 | d7—d5 | 9. | Фh5—h6 | Фe7—f8 |
| 3. | Զb1—c3 | Զg8—f6 | 10. | e5 : f6 | Фf8 : h6 |
| 4. | Фc1—g5 | Фf8—e7 | 11. | Զb5—d6+ | Աe8—f8 |
| 5. | e4—e5 | Զf6-d7 | 12. | Фg5:h6+ | Աf8—g8 |
| 6. | h2—h4 | c7—c5 | 13. | f6—f7×. | |
| 7. | Զкc3—b5 | f7—f6 | | | |

Լուծեցեք խնդիրը և ուղարկեցեք «Պիոներ» ամսագրի խմբագրություն՝ Երևան, Մարքսի փողոց № 21։



Սպիտակների քայլը

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապկի առաջին էջում՝ «Պատանի անտառապահները»
Գործ նկ. Ա. ԲԵՔԱՐՅԱՆԻ


„ПИОНЕР“

№ 3

ЖУРНАЛ ДЛЯ ПИОНЕРОВ И ШКОЛЬНИКОВ

Орган ЦК ЛКСМ Армении

Год издания 23-ий, апрель, 1951 г. Ереван

Խմբագիր՝ ԳՈՒՐ. ՍԵՎՈՒՆՑ





Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-87, 2-59-06

ՎՖ 01070, Պատվեր 160. Տիրաժ 5000. Տպագրական 2¼ մամուլ. Հեղինակային 2 մամուլ. 1 մամուլում 45.200 տպ. նիշ։ Արտադրության է հանձնված 21/II—51 թ.։ Ստորագրված է տպագրության 16/III—51 թ.։

Հայպոլիգրաֆհրատմարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փ. № 65, 1951 թ.։

ԳԻՆԸ 2 Ռ.



*Օր-օրի վրա իր ավարտմանն է մոտենում Մոսկվայի խոշորագույն կառուցումներից մեկի՝ Լենինյան սարերի վրա կառուցվող Մոսկվայի Պետական համալսարանի շենքի շինարարությունը։ Երբ այդ վիթխարի շենքը պատրաստ լինի, համալսարանի վեց ֆակուլտետը կտեղափոխվեն նոր շենքերը։ Համալսարանին կից կստեղծվի գիտական գրադարան, որը 1.200.000 հատոր գիրք կունենա։ Բիոլոգիական-հողագիտական ֆակուլտետի շենքի մոտ կտարածվի ագրո-բուսաբանական այգին։ Այգին կբռնի 32 հեկտար տարածություն։ Շենքի ամենաբարձր՝ աշտարակային մասի վեց հարկերում կտեղավորվի երկրագիտության թանգարանը։ Նոր շենքը կունենա վեց հազար սենյակ ուսանողների և ասպիրանտների համար։*

*Նկարում՝ համալսարանի գլխավոր կորպուսի շինարարության ընդհանուր տեսարանը։*

*Լուսանկ. Է. ԵՎԶԵՐԻԽԻՆԻ և Ն. ԿԻՐՆԵՎԻ (ՏԱՍՍ-ի ֆոտոխրոնիկա)*